ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՀԶ.

# ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1914.

# ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

ԵՒ

# ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՍԱՏՐԱՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## Դ—Զ ԴԱՐԵՐՈՒՆ

---

ԻՐԱՒԱՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

ԳՐԵՑ

**Կ. ԳԻՒՏԵՐԲՈՔ**

ԳԵՐՄԱՆԵՐԷՆԷ ԹԱՐԳՄԱՆԵՑ

**Հ. ՄԿՐՏԻՉ Վ. ՆՈՐՃՈՒԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1914.

# Ա Ռ Դ

Հեղինակիս այս երկրորդ երկասիրութիւնն է որ թարգմանաբար կը հրատարակուի: Առաջինը՝ քանի մը տարի յառաջ լոյս տեսած՝ կը նկարագրէր "Բիւզանդիոն եւ Պարսկաստան[1]"՝ դիւանական յարաբերութեանց տեսակէտով, Յուստինիանոսի եւ նաեւ յաջորդաց ժամանակ. (գլխաւորաբար 532–591 ժամանակամիջոցը:) Այս յարաբերութեանց առիթն եւ մանաւանդ պատերազմաց ասպարէզն ըլլալով Միջագետք, Հայաստան եւ Լազիկէ՝ մատեանը կարեւորութիւն ունէր առանձնապէս այն շրջանի Հայ պատմութեան համար: Ներկայ երկասիրութիւնս կրնայ լրացում նկատուիլ առաջնոյն, եւ թէեւ ծաւալով փոքր՝ աւելի կարեւոր ալ անկէ: Վասն զի կը նկարագրէ Հռովմէահայաստանն այնպէս՝ ինչպէս կազմուեցաւ 387 ի բաժանմամբ եւ ինչպէս զարգացաւ յաջորդ շրջանին, նկատի ունենալով բաց ի արտաքին յարաբերութիւններէն՝ գլխաւորաբար ներքին կազմակերպութիւնը՝ վարչական եւ իրաւական տեսակէտով: Իբր այսպիսի մեծ լուսաւորութիւն մըն է Հայաստանի այն բաժնին համար՝ որուն մասին շատ ցանցառ են մեր տեղեկութիւնք մինչ այս

---

[1] Կ. Գիւտէրբոք, "Բիւզանդիոն եւ Պարսկաստան եւ անոնց դիւանագիտական եւ ազգային-իրաւական յարաբերութիւնները Յուստինիանու ժամանակ." Թրգմ. Հ. Հմայեակ Համբարեան: Վիեննա, 1911. 8°, էջք Ը+162 (Ազգ. Մատ. ԿԲ.):

*շրջանին։ Հեղինակը՝ արդարադատութեան գաղտնի խորհրդական եւ Իրաւանց ուսուցչապետ՝ գրած է այս երկը նախնաբար այն Ձօնամատենին համար, զոր Կէօնիգսբերգի Համալսարանի Իրաւաբանական ճիւղը հրատարակած է ի պատիւ յոբելեանի Դր. Թէոդոր Շիրմէրի եւ յետոյ անկէ առանձինն ալ լոյս տեսած[1]։ Այս վերջինոյն համեմատ է մեր թարգմանութիւնը, որ մաս առ մաս լոյս տեսնելով “Հանդ. Ամս.„ի մէջ[2]՝ այժմ կը հրատարակուի ամփոփուած առանձինն հատորով, եւ որ կը յուսանք թէ դիւրամատոյց եւ օգտակար կ'ըլլայ ընթերցողաց աւելի ընդարձակ շրջանի մը։*

*ԹԱՐԳՄԱՆԻՉԸ*

---

1 Dr. Karl Güterbock, Römisch-Armenien und die römischen Satrapien im 4. bis 6. Jahrhundert. Eine rechtsgeschichtliche Studie. (Sonderabdruck aus der Festgabe der Königsberger juristischen Fakultät zum Doktorjubiläum für Geheimrat Dr. Theodor Schirmer.) Königsberg i. Pr. 1900. 8⁰, pp. 58.

2 *Տես ՀԱ. 1914, էջ 65–83, 162–177, եւ 412–435։*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## ԵՒ ՀՌՈՎՄԷԱԿԱՆ ՍԱՏՐԱՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## Դ—Զ ԴԱՐԵՐՈՒՆ

---

Պրոկոպիոս Կեսարացի իւր Վասն շինուածոց Յուստինիանու գրուածին մէջ մեզի տեղեկութիւն կու տայ, թէ Հայաստանի ինչ ինչ մասերուն մէջ՝ որ Հռովմայեցւոց սահմանակից էին ու անոնցմէ նուաճուած, իշխանութիւն կը վարէին բնիկ ժառանգական ցեղապետներ՝ սատրապ անուամբ եւ թէ Յուստինիանոս զանոնք մէջտեղէն վերցուց[1]։ Իրօք ալ այս բանս տեղի ունեցաւ, երբ 536ին Յուստինիանոս իւր 31դ օրինագրովը հայկական գաւառները նոր բաժանման ենթարկեց[2]։ Թէոդոսեան օրինագրոց[3]

---

1 Պրոկոպիոս de aedif. III. I (247 Բ.)։ — Բիւզանդական մատենագիրները վկայութեան կոչուած են Բոնի հրատարակութեան համեմատ, քանի որ ուրիշ հրատարակութիւն մը յիշուած չէ։

2 Nov. 31. c. 1. 3.

3 L. 6 Codex Theodosianus de auro coronario 12. 13.

դոթոփրիտեան մեկնութեան մէջ հանդիպած մէկ հարեւանցի յիշատակութիւնն եթէ մէկ կողմ թողունք, այս Հռովմէա-Հայ սատրապներուն եւ անոնց յարաբերութեանց գրեթէ ուշադրութիւն դարձուած չէ. եւ սակայն պէտք է որ մեզի համար շահագրգիռ ըլլայ, որ հին աքեմենեան պետութենէն ծագում առած, թշնամի եւ նոյն ժամանակուան ըմբռնողութեան համեմատ բարբարոս ժողովուրդէ մը փոխ առնուած անուն մը եւ աստիճան մը[1]՝ Հռովմէական պետութեան նուրբ գործարանաւորութեանը մէջ կրցած է տեղ գրաւել եւ հոն իւր գոյութիւնն երկու դարէ աւելի պահել։ Այս զարմանալի երեւոյթին սկզբնաւորութիւնը մինչեւ Դիոկղետիանոսի ժամանակները կը հասնի։ Ասոր վրայ աւելի որոշ բան մը գրելու փորձը՝ այն ատեն միայն կրնայ յաջողիլ, երբ Հռովմէական Հայաստանի մէջ տիրող յարաբերութիւններն ալ նկատողութեան առնուին ընդհանրապէս եւ օգուտ քաղուի պատմական զարգացումէն այն յարաբերութեանց՝ որ կային Հռովմայ եւ Հայաստանի մէջ։

---

1 Novelle 31. c. 1 § 3՝ «Իշխանութեան այսպիսի անուն մը ոչ Հռովմէական էր եւ ոչ ալ մեր նախնեաց ծանօթ, այլ օտար վարչութենէ ներմուծուած»։

## Ա.

### Հռովմ եւ Հայաստան՝ մինչեւ վերջնոյս բաժանումը, 387։

*Հռովմ եւ Պարսկաստան: Դիոկղետիանոսի խաղաղութիւնը: Սատրապութիւնները: Յովիանոսի խաղաղութիւնը: Հայաստանի բաժանումը: Բաժանման ժամանակին ճշդումը: Պրոկոպի նկարագրութիւնը:*

Հռովմայ համար հայկական խնդիրն այն ատեն երեւան ելաւ, երբ հասարակապետութեան վերջին դարուն՝ հռովմէական բանակներն Եփրատ հասան եւ ասով պարթեւական պետութեան հետ ընդհարումն անխուսափելի դարձաւ։ Հայաստան, Իրանի առջեւը գտնուող այս լեռնաշխարհը, միջին Ասիայէն դէպ ի յառաջակողմեան Ասիա խաղացող գունդերուն համար յարձակման բնական այս դուռը, իւր դիրքովն ու որպիսութեամբը շատ նպաստաւոր էր անոր՝ որուն ձեռքը կը գտնուէր, թէ առաջն ու ետեւը գտնուող երկիրներուն վրայ յարձակելու եւ թէ զանոնք պաշտպանելու։ Հայաստան՝ երկու հզօր դրացիներու մէջ սեպի պէս մտած՝ եւ ինքնին շատ տկար՝ անոնց դէմ անկախ իշխանութիւն պահպանելու, ստիպուած էր անոնցմէ մէկուն կռթնելու։ Հայաստանի ամբողջապէս այս դրացիներէն մէկուն անցնիլն եւ նոյն իսկ անոր

Հայաստանի վրայ դերակշիռ ազդեցութիւն մ'ունենալն՝ մէկալ դրացւոյն համար միշտ սպառնալից վտանգ մըն էր։ Այս է պատճառը, որ Հռովմայ եւ Պարսկաստանի մէջ ամէն դիւանագիտական եւ զինուորական գործողութեանց առեն՝ Հայաստան դարերով աւագ դեր մը խաղացած է, եւ թէ երկու պետութիւնք դրեթէ անընդհատ մրցմամբ ջանացած են այս երկիրն իրենց իշխանութեան շրջանակին մէջ առնելու եւ հակառակորդն անկէ դուրս վտնելու։ Բաւական յաճախ Հայաստան հանդիսավայրն եղած է անոնցմէ մղուած ճակատներուն։ Հայաստան ու անոր ժողովուրդը՝ ստիպուած էին տոկալու պատերազմի եւ նոյն իսկ խաղաղութեան բեռերուն, երբ Հռովմ եւ Պարսկաստան նոյնին միասին իրարու հետ հաշտութիւն կը կնքէին։

Քանի որ Հռովմ գործ ունէր թոյլ կապերով ի մի կցուած պարթեւական պետութեան հետ — հակառակ մասնական պարտութեանց — յաջողութեան առաւելութիւնը՝ նաեւ Հայաստանի նկատմամբ՝ ընդհանրապէս իւր կողմն էր։ Եփրատայ արեւմտեան կողմը գտնուող Փոքր-Հայք՝ որ Պոմպէոսի ձեռքով ասիական յարաբերութեանց կարգադրութեան միջոցին արդէն Հռովմէն կախում ունեցող պաշտպանեալ տէրութիւն մ'եղած էր, Վեսպասիանոսի օրով պետութեան երկիրներուն կցուեցաւ եւ Կապպադովկիայի գաւառին միացուեցաւ։ Մեծ-Հայք ալ, որուն վրայ պարթեւ Արշակունեաց կողմնակալ մէկ ճիւղը կ'իշխէր, շատ անգամ հռովմէական զէն-

քերուն յաղթանակաւ մինչեւ Կասպից ծով յառաջ խաղալը տեսաւ, եւ Հռովմայեցւոց բացորոշ ազդեցութեան ենթարկուած մնաց՝ Անտոնինեանց եւ Սեւերեան տան կայսերաց իշխանութեան միջոցին եւս[1]։ Այս վիճակը կարեւոր փոփոխութիւն կրեց՝ երբ երրորդ դարու կիսուն, Սասանեանց ուժեղ եւ ազգային ու կրօնական մոլեռանդութեամբ վառեալ հարստութիւնը Պարթեւաց տեղ իրանի իշխանութիւնը ձեռք անցուց։ Այս նոր պարսկական պետութեամբ՝ Հռովմայեցւոց դէմ ելաւ արտաքոյ կարգի վտանգաւոր, բոլորովին համազօր, եւ յաճախ հզօրագոյն ախոյեան մը, որ արտաքուստ ալ ճանչցուելու էր թէ նոյն իրաւունքներն վայելող մեծ պետութիւն[2]։ Մինչ Պարթեւք Եփրատայ գիծն իբրեւ իրենց իշխանութեան տարածութեան վերջին սահման կը նկատէին, նոր հարստութեան վեհապետները Աքեմենեանց իբր յաջորդ, ժամանակաւ անանցմէ

---

1 Այս յարաբերութեանց նկատմամբ տես Mommsen, Röm. Geschichte V. 356 ff.

2 Կայսրն եւ արքայից արքան զիրար եղբայր կը նկատեն եւ իրենց թղթերուն մէջ զիրար եղբայր կ'անուանեն։ Ամմ. ԺԷ. 5. 3. 10. "Արքայ արքայից Շապուհ — Կոստանդին կեսարու եղբօր իմում"։ — "Կոստանդիոս միշտ Օգոստոս եղբօր իմում Շապհոյ արքայի"։ — Կաւատ Յուստինոս կայսեր կը գրէ "Կը վայելէ մեզի, որ եղբայր ենք"։ — Կայսրն եւ արքայից արքան փոխադարձաբար իրարու կը ծանուցանեն իրենց գահակալութիւնը եւ այսպիսի քաղաքավարութեան մը զանցառութիւնը վատ ազդեցութիւն կը գործէ։ Theophylactus Simocatta (հրտ. de Boor) III. 12. 17. VIII. 15.

գրաւուած յառաջակողմեան Ասիայի բոլոր երկիրները պահանջել սկսան[1]. եւ կարծես թէ անոնց այս յաւակնոտ ձգտման կատարումը մօտեցած էր, երբ արեւելքի մէջ տեղի ունեցաւ մինչեւ նոյն ատեն չտեսնուած տեսարան մը — հռովմէական կայսեր մը Պարսիկներէն գերի բռնուիլը[2]: Հայաստան եւս կրեց հակահարուածը. հայ թագաւորութեան կործանումն ու Հայաստանի գրաւումը պարսիկ քաղաքականութեան գլխաւոր նպատակն էր, որուն իրագործման առաջն չէին կրնար առնուլ Հռոմայեցիք, որ նոյն միջոցին զբաղած էին իրենց սահմաններուն վրայ յարձակող բարբարոսներն ետ մղելու: Երբ վերջէն բաւական տարիներ ետքը, Հռովմայեցւոց օգնութեամբն՝ ազգային հարստութիւնը Հայաստանի գահը վերստին ձեռք բերաւ[3], եւ երբ այս պատճառաւ Պարսից Ներսեհ[4] թագաւորը հռովմէական երկիրներն յարձակեցաւ, Դիոկղետիանոսի Գաղերիոս զօրավարն էր հռովմէական զինուց պատիւը փառաւորապէս վերահաստատողը՝ Պարսիկներն այնպիսի սոսկալի պարտութեան մը մատնելով, որ արքայից արքան խաղաղութիւն խնդրելու հարկադրուեցաւ:

---

1 Առաջին անգամ Արտաշիր Ա. այս պահանջումն ըրած է: Հերոդիանոս Ը. 2:

2 Վաղերիանու վախճանին նկատմամբ տե՛ս Mommsen, V. 429. Nöldecke, Aufsätze zur Pers. Geschichte, 93.

3 Հմմտ. Gutschmidt, Kleinere Schriften, III. Nr. XIII. 403 ff.

4 Արեւմտեան աղբիւրներն այս թագաւորը կ՚անուանեն Narses, Narsaeos: Իշխած է 293—303:

Այս 297ին կնքուած խաղաղութեան պայմանները ցոյց կու տան թէ Դիոկղետիանոս որչափ չափաւոր ու խոհեմ գտնուած է։ Այս պայմաններով արեւելեան յարաբերութիւնները կարգի դրուեցան Հռովմայեցւոց արտաքոյ կարգի նպաստաւոր եղանակաւ[1]։ Հայաստան պարսկական լուծէն ազատուելով՝ հռովմէական պաշտպանութեան ներքեւ առնուեցաւ. Տիգրիսի վերին ընթացքն այնուհետեւ երկու պետութեանց սահմանը պիտի ըլլար, բայց այնպէս մը, որ անկէ անդին գտնուող քանի մը հայկական եւ պարսկական սահմանակից երկիրներ՝ արեւմուտքէն Անգեղ տուն եւ Ծոփք, արեւելքէն Արզն, Կորդուաց աշխարհ եւ Մոկք[2], Հռովմայեցւոց պիտի թողուէին[3], ինչպէս նաեւ Միջագետաց Ծաւդէքը, լեռնոտ երկրամաս մը, որ լեզուաձեւ կ'երկննար մինչեւ Ասորեստան՝ Հայաստանի եւ Միջագետաց մէջ մտնելով, որ եւ յարմարութիւն ունէր թէ՝ Պարսից արգելք

---

1 Aurel. Victor, Caes. 39. 33–37. Eutrop. 9. 24. Rufus Festus, breviar 14. 25. Petros Patrikios (C. Müller, Fragm. historic. Graecorum IV, 188).

2 Թէեւ Մոկք՝ Պետրոս Պատրիկիոսի քով բացայայտ չի յիշուիր, բայց պէտք է որ իբրեւ մասն Կորդուաց նկատուելով՝ անոր հետ ի միասին անցած ըլլայ Հռովմայեցւոց, քանի որ վերջէն Յովիանոս խաղաղութեամբ Պարսից ետ դարձուեցաւ։

3 Պետր. Պատրիկ. անդ. — Դէպ ի արեւելեան կողմ Անգեղ-տունը՝ Ծոփաց եւ Աղձնեաց, Կորդուաց եւ Ծաւդէից հետ Հռովմայեցիք ունէին։ — Ռուփոս Փեստոս, 14 "Տիգրիսի ափը սահման եղաւ, որով եւ Տիգրիսէն անդին բնակող հինգ ազգերու հպատակութիւնն ընդունեցանք"։

հանդիսանալու եւ թէ հռովմէական սահմանները պաշտպանելու:

Ցետնագոյն մատենագիրներու[1] այս անդըրտիգրիսեան գաւառներ անուանածներուն ստացումը պատճառ եղաւ հռովմէական սահմանակից սատրապութեանց ծագման:

Հին ժամանակներն երբ Հռովմ նուաճմամբ կամ ստացմամբ երկիրներ ձեռք կը բերէր, բնականապէս ըստ կարի շուտով զանոնք քաղաքականապէս ու ռազմագիտօրէն կազմակերպելով կանոնաւոր վարչութեան ներքեւ կը դնէր: Այսպէս վարուեցաւ Հռովմ նոյն իսկ Տրայիանոսի իշխանութեան ատենը՝ Հայաստանի, Ասորեստանի՝ թէեւ միայն անցողակի կերպով, եւ յետոյ Օսրոհայաստանի ու Միջագետաց նկատմամբ[2]: Սակայն այս կերպը Պարսկաստանէն նոր առնուած երկիրներուն համար յարմար չերեւցաւ: Հռովմէական գաղթականութիւնք քաղաքներու, գաղթավայրերու եւ զինուորական կայաններու հաստատութեամբ եւ տեղացի ժողովրդեան հետ հետզհետէ ձուլուելով՝ պետութեան նոյն իսկ ամենահեռաւոր մասերուն մէջ՝ ամբողջապէս համազգի վիճակ մը յառաջ բերաւ. իսկ ծայրագոյն արեւելքի մէջ՝ հոն դարերէ ի վեր բնակութիւն հաստատած հել-

---

1 Transtigritani (անդրտիգրիսեանք)՝ Ammian. XVIII. 9. 2. XIX. 9. 2. XXI. 6. 7. Transtigritanae regiones (անդրտիգրիսեան կողմանք). XXV. 7. 9. Mesopotamiam cum Transtigritanis regionibus (զՄիջագետս հանդերձ անդրտիգրիսեան կողմամբք), Ruf. Fest. 25.

2 Marquardt, Röm. Staatsverw. I. 277 ff.

գրաւումն ոչ այնչափ մնայուն ստացուածք եւ պետութեան յաւելում կը նկատէին, որչափ սահմանները պաշտպանելու համար կայան, զորոնք պահել ու պահպանել թէպէտ պարտք ու պաշտօն կը համարէին, բայց անոնց ներքին յարաբերութեանց եւ քաղաքացիական վարչութեան խառնուելու պէտք մը չէին տեսներ։ Կայսրները գոհացան տեղական կարգն ու սարքը՝ զոր սատրապութեանց մէջ գտան, ըստ կարելւոյն անփոփոխ պահելով։

Հայաստան վաղուց հետէ բոլորովին թուլայօղ աւատային պետական վարչութեան մը պատկերը կ'ընծայէր՝ ամէնէն աւելի նման հին սկովտական տոհմային կազմակերպութեան։ Հայաստան կը բաժնուէր բազմաթիւ մեծ ու փոքր այլացեղ նահանգներու եւ գաւառներու[1], որոնց գլուխը կեցած էին հնուց ի վեր բնիկ ընդարձակածաւալ ստացուածքներով հզօր ժառանգական իշխաններ եւ նախարարներ՝ որոնք իրենց սահմաններուն մէջ գրեթէ անկախ եւ նոյն իսկ բացարձակ կ'իշխէին իրենց սերնդոց ու հպատակաց վրայ։ Քաղաքական իշխանութիւնն այս ազնուազարմ տոհմիկներուն ձեռքը կը գտնուէր. ասոնք իրենք զիրենք հաւասար կը համարէին թագաւորին, որ թէեւ պարսիկ արքաներու նմանելով՝ ինք զինք սիգաբար արքայից արքայ կը կոչէր, սակայն իրականին մէջ

[1] Պլինիոս, Բնկն. պատմ. Զ. 10 Մեծ Հայոց մէջ կը հաշուէ “120 կուսակալութիւն՝ զորոնք զօրապետութիւն կը կոչեն. եւ անոնցմէ ոմանք առանձին թագաւորութիւն”։

մեծամեծներէն կախում ունէր։ Այս տոհմային կազմակերպութենէն կը մեկնուի, թէ ինչու Հայաստան առ արտաքս ակար էր եւ ներքին խռովութիւններու մատնուած՝ որոնցմով այնքան հարուստ է այս երկրին պատմութիւնը։ Այն իշխանները կը կրէին այլեւայլ անուններ ու տիտղոսներ[1]՝ որոնց սատրապ[2] անունը կուտային Հռովմայեցիններն ու Յոյները, քանի որ այս բառն էր իրենց ընտանի։ Այսպիսի սատրապներ կը նստէին իբրեւ իշխան եւ տէր նոյն իսկ դիոկղետիանեան խաղաղութեամբ Հռովմայ մաս ինկած երկիրներու մէջ։ Պարսիկներն արդէն Հայաստանը գրաւելու առեն քաղաքականութիւնն ունեցած էին նահանգներու վրայ տիրող հարկատու իշխաններն իրենց իշխանութեանը մէջ պահելու եւ անոնց ձեռօք՝ յանուն արքայից արքային, գրաւուած երկիրները կառավարելու։ Պարսից օրինակին հետեւեցան

---

[1] Հայ աղբիւրներու մէջ՝ իշխանք, նախարարք. գոհացուցիչ կերպով մեկնուած չէ բդեաշխ. Նէօլդէքէ այս բառը նոյն կը համարի Ամմիանոսի քով (ԻԳ. 6. 14) յիշուած Vitaxa (vistaxa?) բառին հետ (Mommsen, Röm. Gesch. 1885, 16)։ Nöldecke, Tabari, 449. Mommsen, Röm. Gesch. V. 344, 2. Յունարէն Ագաթանգեղոսը (Müller, Fragm. hist. Graec. V, 2) կը գործածէ μεγιστᾶνες, ἄρχοντες, σατράπαι.

[2] Σατράπης հին իրանեան kschatrapavânt (— իշխող երկրի). սոր տեղ Սասանեանք կը գործածէին մարզպան (= սահմանակալ տէր), Nöldecke, Tabâri 102, 446։ Յոյնք եւ Հռովմայեցիք պահեցին հին սատրապ անունը։ Ամմիանոս փոխարէն հմմտ. Ամմ. ԻԱ. 6. 7. ԻԳ. 6. 14։

անընդհատ տեւեց Կոստանդիանոս Մեծին որդ-ւոց կառավարութեան միջոցին, եւ Յուլիանոս կայսեր յաջողութեամբ սկսած էր, պատերազմի տեւողութեան միջոցին ձախողած արշաւանքը, ինչպէս նաեւ անոր եղերական վախճանը այս պատերազմական տեսարանին վերջին արարուածը կազմեց[1]։ Դաշանջի միջոցին, բանակին դժպհի կացութիւնը՝ ստիպեց Յուլիանոսին յաջորդը՝ զՅովիանոս ընդունելու այն ծանր ու ստորնացուցիչ պայմանները, զորոնք Պարսից արքան անոր առաջարկեց՝ փոխարէնն թող տալով, որ բանակին ազատ ետ քաշուի։ 363ին Յուլիսի առաջին օրերուն դրուեցաւ խաղաղութեան դաշինքը, դիւանագիտական դաշինքին մէկ ծաղրանկարն, զոր ժամանակակիցներն եւ յաջորդք նկատեցին Հռովմայ համար իբր ազգային դժբախտութիւն ու նախատինք[2]։ Շապուհ ի սկզբան ետ պահանջելէ ետքը այն, ամէն բան՝ ինչ որ իր հաւուն ձեռքէն խլուած էր[3], ի վերջոյ գոհ եղաւ ետ առնելով Հռովմայեցիներէն Միջագետքի մէկ մասն՝ Մծբին քաղաքով։

---

1 Ամմիանոս արշաւանքը կը նկարագրէ երկու ախոյեանները, Գիրք ԻԳ—ԻԵ։

2 Ամմ. ԻԵ. 7, 9. Եւտրոպ. Ժ. 17, 1, 2. — «Շապուհ, [illegible] — [illegible] 25 (263)։

3 Ամմ. անդ. «Արքան յամառութեամբ ետ կը պահանջէր, ինչպէս ինքը կ'ըսէր, իրենները, զոր երբեմն Մաքսիմիանոս յափշտակած էր»։

— որ նոյն տեղւոյն Հռովմայեցւոց պաշտպանողական գծին ամենակարեւոր պատուարն էր — եւ վաթսունուվեց տարի յառաջ Պարսից ձեռքէն առնուած անդրտիգրիսեան գաւառներէն մէկ քանին՝ այսինքն՝ Արզն, Ծաւդէք, Կորդուէք, Մոկք եւ Ռէհիմէնէ գաւառը[1]։ Ընդհակառակն Հռովմայ մնացին Անգեղ տուն եւ Ծոփաց սատրապութիւնները՝ որոնց մէջ այնուհետեւ շարունակուեցան սատրապական յարաբերութիւնները։ Հռովմայ իշխանութեան համար սակայն այս կորուստներէն շատ աւելի ծանր եկաւ Հայաստանէ հրաժարիլը, որուն Հռովմայեցւոց հաւատարիմ դաշնակից Արշակ Գ. թագաւորէն Պարսիկները սարսափելի վրէժ լուծեցին։ Յովիանեան խաղաղութենէն անմիջապէս ետքը՝ Հայաստան երկար ժամանակ ասպարէզ դարձաւ պահակալութեան, քաղաքական ու կրօնական կռիւներու[2]։ Եթէ չէր ուզուեր որ Հռովմայեցւոց

1 Ամմ. անդ. «Հինգ անդրտիգրիսեան գաւառները» Զոսիմոս Գ. 31. «Ծաւդէից ազգը, նմանապէս Կորդուաց, Ռէհիմենացւոց եւ Զալենացւոց [կարդա՛ Աղձնեաց] ազգերը»։ Ռէհիմենա, որ դիոկղետիանեան խաղաղութեան մէջ յանուանէ չի յիշուիր. Միջագետքի եւ Ասորեստանի սահմանին վրայ՝ Ծաւդէից հարաւ-արեւելեան կողմը ըլլալու է։ Կորդուէք պէտք է որ այն ժամանակ մասամբ Պարսից իշխանութեան տակ եղած ըլլայ, քանի որ Ամմիանոս Հռովմէական Կորդուէքէն զատ (Corduenae regionis et nostrae XXV. 7. 8) Պարսից հպատակ Կորդուաց սատրապ մը կը յիշէ։ Մաղաղաս ԺԳ. (336) լոկ Միւգդոնիա գաւառին եւ Մծբինի՝ Պարսից տրուելուն վրայ կը խօսի։

2 Այս խռովութեանց նկատմամբ հմմտ. Ամմ. ԻԷ. 12. Լ. եւ ԼԱ. եւ Հայ աղբիւրները։ Հայ աղբիւրները տես վարը էջ 20։

հեղինակութիւնն արեւելքի մէջ ամբողջապէս ջնջուի, կայսերք ստիպուած էին թող չտալու որ Հայաստան բոլորովին օտարանար հռովմէական ազդեցութեններէն եւ ամբողջովին կախում ունենար Պարսիկներէն: Հայական խնդիրը տեւական անհանգստութեանց եւ վտանգաւոր տարաձայնութեանց աղբիւր եղաւ[1] դարձեալ երկու պետութիւններու մէջ: Ծանր ընդհարման մը վտանգն մանաւանդ չափէն աւելի մօտեցաւ, երբ հայ աւագանին ապստամբեցաւ սպաննուած Պապ թագաւորին տկար որդւոյն, Արշակ Գ.ի դէմ, զոր Հռոմ կը պաշտպանէր, եւ անոր դէմ հանեց[2] իբր գահուն հետամուտ՝ Պարսից պաշտպանութիւնը վայելող Արշակունի Խոսրովը: Իրաց այս վիճակին մէջ մեծ նշանակութիւն ունեցաւ Թէոդոս Առաջնոյն զօրեղ անձնաւորութիւնն եւ իր անյողդողդ կերպով արեւելքի մէջ ասպարէզ մտնելը, որով Սասանեան պետութեան մէջ տիրող տրամադրութիւնը չափաւորութեան ենթարկուեցաւ: Ակնյայտնի էր որ երկու կողմերն ալ խաղաղութիւն պահպանելու եւ ամրապնդելու մէտ էին: Պետութեան նոյն ատենուան կացութիւնն ալ զԹէոդոս կը ստիպէր, որ եթէ կարելի էր արեւելքի մէջ պատերազմի չբռնուէր, քանի որ տէրութեան սահմաններուն վրայ յարձակող բարբարոսներն

---

1 «Կռուի եւ կռուոյ մշտնջենաւոր պատճառ — Հայքը», Ամմ. Լ. 2. 1:

2 Պապ (Պարա)՝ Արշակ Գ.ի մէկ որդին՝ Վաղէս կայսեր հրամանովը իբր 375ին սպաննուեցաւ:

եւ մինչեւ արեւմուտք իբր հակառակ կայսր ելեւցող Մաքսիմիանոսի դէմ պատերազմիլ հարկ էր։ Խաղաղութեան դաշնադրութիւններ տասի եւ անոր երթեւեկ կ'ընեն։ Բիւզանդիոնի մէջ 384ին պարսիկ դեսպանութիւն մը կ'երեւայ, ոչ այնչափ՝ ինչպէս արեւելեան-հռովմէական փառասիրութիւնը մեզի հաւատացընել կ'ուզէ, կայսրմէ խաղաղութիւն խնդրելու[1], որչափ Շապուհ Գ.ի[2] գահակալութիւնը Հռովմայ արքունեաց ծանուցանելու, ինչպէս որ սովորութիւն եղած էր երկու պետութեանց։ Երկրորդ պատգամաւորութիւն մը Բիւզանդիոն կու գայ 386ին[3]. եւ այս այն պատգամաւորութիւնն եղած պիտի ըլլայ, որ Հայաստանի մասին որոշ համաձայնութեան առաջարկներ կը բերէր։ Հետեւորդ բանակցութիւններն, որոնցմով վերջնականապէս խաղաղութեան եւ բարեկամութեան դաշինքն հաստատուեցաւ, կ'երեւայ թէ Տիզբոնի մէջ եղած են։ Եթէ Կղաւդիոս բանաստեղծին հաւատք ընծայել ուզենք, Ստիլիկոն — նոյն տարին 26 տարեկան — եղած ըլլալու

---

1 Մարկղ. յամի 384 — «Խաղաղութիւն — խնդրեցին»։ Իդատ. Ժամանակագր. յամի 384։ Որոսիոս Է. 38, 8. — «Պաղատանօք խաղաղութիւն խնդրեցին»։

2 Թագաւորեց 383—388։ Շապուհ Գ.ի որդին էր եւ երկրորդ յաջորդը։

3 Իդատիոս Ժամանակագր. յամի 386 «Թէոդոսի եօթներորդ տարին՝ Պարսից դեսպանները Կոստանդնուպոլիս Թէոդոսին եկան»։ Մարկեղղինոսի յամի 385 հետեւեալ խօսքը — «Թէոդոս . . . ինչ ինչ պարգեւ իբր պատգամաւորներ [illegible] Հնդկաստանէն [illegible] — մի կողմը պարսկաստանի հայերը [illegible]

է այն անձն, որուն յանձնուեցաւ այս գործողութիւնը եւ անոր միջնորդութեամբ կնքուեցաւ 387ի դաշինքը[1]։ Հաշտութեան ծախքերն ըրած պիտի ըլլայ յամենայն դէպս Հայաստան։

Երկու պետութիւնները միաբանեցան՝ իրենց երկարամեայ երկպառակութեան եւ փոխադարձ նախանձախնդրութեան պատճառն մէջտեղէն ընդ միշտ բառնալ եւ այս վախճանաւ կռուոյ առարկան իրենց մէջ բաժնեցին եւ իրենց շահու սահմանները ճշդիւ որոշեցին[2]։ Նախ եւ յառաջ Հայաստանի քանի մը մասերն իրենց երկիրներուն հետ միացընելով՝ զայն փոքրկացուցին, եւ այս կերպ անդամատուած երկիրն այնպիսի եղանակաւ մը բաժնեցին, որ անոր ընդարձակագոյն արեւելեան մասը — նոյն ատենէն սկսեալ՝ Հռովմայեցւոց եւ Յունաց Պարսկահայք անուանածը — բոլորովին պարսկական ազդեցութեան ենթարկուեցաւ. իսկ արեւմտեան փոքրագոյն մասը՝ այնուհետեւ Մեծ Հայք կոչուածը, նոյն կերպով Հռովմայ ազդեցութեան ներքեւ դրուեցաւ։ Այս երկու մեծ

---

[1] Կղաւդիանոս վասն հիւպատոսութեան Ստիլիքոնի 51. "Պատտոնի էիր եւ Ասորեստան հանդիսացար հեղինակ խաղաղութեան. այդպիսի վայրենի ազգի մը հետ դաշնադրութիւնը յանձնուեցաւ երիտասարդին"։ Հմմտ. Sievers, zur Gesch. der röm. Kaiser, 330։

[2] Շապուհ Բ. կանխաւ արդէն Վաղէս կայսեր առաջարկած էր՝ Հայաստանը բոլորովին ջնջել։ Ամմ. Լ. 2. 1. "Իշխանին պատգամաւոր առաքելով՝ կը համոզէր՝ զՀայաստան, կագի եւ կռուոյ մշտնջենաւոր պատճառը՝ բոլորովին ջնջել"։

պետութիւնները հաւանաբար արդէն այն ատեն Հայաստանի ամբողջական ջնջումը նկատի առած էին, եւ Հայոց ազգային արժանապատուութեան զգացումը շատ խորունկ չվիրաւորելու համար էր միայն, որ գոհացան՝ փոխանակ Հայաստանը բոլորովին իրենց երկրին միացընելու՝ ընդհանուր թագաւորութիւնը վերցընել եւ իւրաքանչիւր բաժնին մէջ գերիշխանութիւնն ունեցող պետութեան ձեռքով հայ Արշակունի արքայական զարմէն թագաւոր մ'անուանել եւ զայն նոյն պետութեան հարկատու ընել: Պարսկահայաստանն աւատ ընդունեցաւ արքայից արքայի սիրելին՝ Խոսրով, իսկ հռովմէական մասն Արշակ՝ որ մինչեւ այն ատեն ամբողջ Հայաստանի վրայ իշխած էր[1]: Բաժանումն իրապէս Հայոց ազգային պետութեան եւ հարստութեան ոչնչացման մէկ նախերգանքն էր: Հայոց թէ պետութիւնն եւ թէ հարստութիւնը ջնջուեցաւ Հռովմայեցւոց մասին մէջ քանի մը տարի ետքը; իսկ Պարսկահայաստանի մէջ քիչ մ'աւելի ետքը՝ 429ին, որով նոյն երկու պետութեանց ձեռքով Հայաստանի վերջնական գրաւման ճամբայ հորդուեցաւ:

Բաժանման դաշինքը շատ աւելի նպաստաւոր էր Պարսկաստանի քան թէ Հռովմայ. որովհետեւ Պարսիկներն առին ամբողջին գրեթէ չորս հինգերորդ մասը, իսկ Հռոմ ստիպուեցաւ

---

1 Հայաստանի բաժանման գլխաւոր աղբիւրն է Փաւստոս Բիւզանդ Զ. ա, որուն վրայ քիչ մ'ետքը պիտի խօսինք:

գոհանալու իբր մէկ հինգերորդ մասովը[1]: Բաժանման առաջարկութիւնը յամենայն դէպս բխած ըլլալու է Պարսկաստանէն՝ որ նոյն միջոցին, հակառակ Հռովմայեցւոց ամենազգի երանգութիւններուն, Արեւելքի մէջ կը ներկայանար իբրեւ առաջնորդող գերիշխանութիւն։ Կայսրն ի վիճակի չէր իւր կամքը բռնութեամբ արքային ընդունիլ տալ. եթէ պատերազմ չէր ուզեր, ուրիշ միջոց չունէր, բայց եթէ Պարսկաստանի առաջարկութիւնն ընդունիլ։ Հռովմայ համար սակայն Հայաստանի անդամատութիւնն — առ երեւոյթ շահով մը հանդերձ — քաղաքագիտական ծանր սխալ մըն էր՝ որ, ինչպէս ապագան ցոյց տուաւ, խաղաղութիւնը բնաւ չապահովեց։ Երկու մեծ պետութիւններն իրարմէ բաժնող հայ հարուածընկալ տէրութեան բարձումը՝ այն երկու մեծ պետութիւններն այնպիսի կէտի մը վրայ ուղղակի եւ խիստ շօշափման մէջ դրաւ, ուր մանաւանդ տկար էր Հռոմ, եւ ասով տեւական առիթ ընծայեց նոյն երկու պետութեանց՝ շփմանց, միջամտութեանց, ոտնձգութեանց եւ պատերազմական կնճռոտութեանց։

Վերոյիշեալ բաժանման դաշնագրութեան կնքումը նորագոյն հեղինակութիւններուն համաձայն՝ դրինք Թէոդոս Առաջնոյն կառա-

---

[1] Որչափ ալ բոլորովին սխալ է Պրոկոպիոսի քով (Վստան շին. Գ. 1, 245—246) բաժանման նկարագրութիւնն, ինչպէս քիչ մ'ետքը պիտի ցուցընենք, սակայն բոլորովին ճիշդ է անոր աւանդած սա իրողութիւնը, թէ պարսկական բաժինը չորս անգամ աւելի մեծ էր քան հռովմէականը։

վարութեան ժամանակը, ճշգագոյնս՝ 387ին[1]։ Այս ենթադրութիւնը սակայն կը կարօտի տակաւին անդրագոյն ապացուցի եւ արդարացման, ինչու որ Հիները Տիլլմոնի հետեւելով, եւ Պրոկոպի քով գտնուած ծանօթութեան մը վրայ յենլով, բաժանումը աւելի քան յիսուն տարի ետ քշած են՝ դնելով զայն Թէոդոս Փոքր կայսեր ժամանակ[2]։

Առաջիկայ խնդրոյն համար իբրեւ աղբիւր կարեւոր են գլխաւորաբար Հայ պատմագիրները, ամէնէն աւելի այն դէպքերու մերձաւորագոյնը՝ արժանահաւատն Փաւստոս Բիւզանդացի՝ հինգերորդ դարու սկիզբէն։ Իր նախնաբար յունարէն գրուած, Հայաստանի եկեղեցական-քաղաքական յարաբերութեանց (317—389) վրայ ճառող ժամանակագրութեան մէջ[3]՝ մատեանին վերջերը բաժանման վրայ կը խօսի։ Հայաստանի խառնակութեանց վրայ ճառելէ ետքը՝ յառաջ կը տանի.

---

1 St. Martin առ Lebeau, hist. du Bas-Empire IV. 429. Spiegel, Erân. Altertümer, III. 338. v. Gutschmidt, Kleinere Schriften, III. 298. Nöldecke, Aufs. 102, 103. Այս երկու վերջիններս բաժանումը 390ին կը դնեն։

2 Tillemont, hist. des Emper. VI. 93 ff. Mommsen, Abh. der Berliner Akad. der Wissensch. 1862, 505.

3 Փաւստոսի նշանակութեան մասին՝ Gelzer, Anfänge der armenischen Kirche ի Berichte der sächs. Gesellsch. d. Wissensch. 47, 111 ff. Փաւստոսի գղղ. թարգմանութիւնը Langlois, Collection des historiens anciens et modernes de l'Arménie I. 209—310։ Գերմ. թարգմանութիւնը հրատարակած է M. Lauer, Köln 1879։

"Եւ այնուհետեւ առնէ խորհուրդ միաբանութեան հաւանութեամբ ընդ միմեանս թագաւորն Յունաց եւ թագաւորն Պարսից. եւ լաւ համարեցան զաշխարհն Հայոց նախ ընդ երկուս ի մէջ իւրեանց բաժանել. զի ասէին թէ ի միջի մերում բնակեալ է այս հզօր եւ հարուստ թագաւորութիւն, լաւ է զի այսու եղծանել եւ խանգարել կարասցուք զայս թագաւորութիւնս. նախ ընդ երկու բաժանել երկու թագաւորօքս արշակունեօք՝ զորս կացուցաք, ապա եւ ընդ նոսա կրծել ջանասցուք, աղքատացուցանել, ի մէջ արկանել ի ծառայութիւն, զի մի կարասցեն ի մէջ մեր ամբառնալ զգլուխ։

Եւ հաստատեցին զայս խորհուրդ. ընդ երկու զաշխարհն բաժանեցին։ Բաժին կողմանն Պարսից էր թագաւորին Խոսրովու եւ բաժին մասինն Յունաց էր թագաւորին Արշակայ։ Բայց եւ ի նոցանէ բազում գաւառք կրծեալք հարեալք այսր անդր, եւ մնաց սակաւ մասն յաշխարհաց երկոցունց առ երկոսեան թագաւորսն։ Բայց սակայն երկոքեան թագաւորքն Հայոց՝ Արշակ եւ Խոսրով, որ Սիւնքն գաւառքն մնացին թագաւորութեանն Հայոց երկոցուն կողմանց ի մէջ իւրեանց, եւ երկոքեան թագաւորքն արշակունիքն ի մէջ երկու բաժնացն սահմանս արկեալ հաստատէին խաղաղութեամբ, եւ երկիրն Հայոց երկոքեան բաժինքն, երկուց թագաւորացն հնազանդէին իւրաքանչիւր բաժնի իւրաքանչիւր թագաւորի. բայց սակայն մեծ էր Խոսրովու բաժին նորա քան զԱրշակայ։„ (Փաւստ. Զ. ա.)։

Փաւստոս թէեւ բաժանման ժամանակը ճշդիւ չի նշանակեր, չ'ըսեր նաեւ զայն գործադրող Հռովմայ եւ Պարսկաստանի իշխողներուն անունները. եւ սակայն դէպքը կը դնէ Մամիկոնեան Մանուէլի 385ին հանդիպած մահուանէն անմիջապէս ետքը, որ շատ տարիներ Հայաստանը Արշակայ անչափահասութեան միջոցին իբրեւ խնամակալ յաջողութեամբ կառավարած էր։ Ասոր մահուանէն անմիջապէս ետքը ծագեցան այն խռովութիւնները, որոնք Պարսից միջամտութիւնն եւ յետոյ Հայաստանի բաժանումը յառաջ բերին[1]. ասկէ կը հետեւի թէ բաժանման դաշնագրութիւնը միայն Թէոդոս Առաջնոյն եւ նոյն միջոցին իշխող Պարսից թագաւորին՝ Շապուհ Գ.ի մէջ կնքուած կրնայ ըլլալ։ Եւ որովհետեւ Շապուհ 383 Օգոստոսէ մինչեւ 388 Օգոստոս իշխած է[2], պէտք է որ դաշանց կնքումը այս ժամանակ տեղի ունեցած ըլլայ ուստի ոչ 383է յառաջ եւ ոչ 388է ետքը։

Թէ Շապուհ դաշնագիրներէն մին եղած է, կը վկայէ նաեւ Ղազար Փարպեցի իւր հինգերորդ դարու վերջերը գրած Հայոց պատմութեան մէջ՝ որ հոն կը սկսի, ուր Փաւստոս իւր պատմութիւնը կը վերջացընէ։ Իւր գրութեան ներածութեան մէջ կը յիշատակէ կատարուած

---

1 Փաւստ. Ե. լը. եւն։ Արշակայ եղբայրը՝ Վաղարշակ արդէն մեռած էր։ Մանուէլի խնամակալութեան ժամանակը լուսաւոր կէտ մըն է Հայոց այս տրտմառիթ պատմութեան մէջ։

2 Nöldeke, Tabari 418. 435.

բաժանումը եւ Շապհոյ՝ հայ մեծամեծներուն խնդրանքովը զԽոսրով թագաւորեցնելը[1]։

Շատ խառնակ է ընդհանրապէս այն ծանօթութիւնը՝ զոր կու տայ Մովսէս Խորենացւոյ անուան ներքեւ շրջող Հայոց պատմութիւնը, յառաջ չափէն աւելի գնահատուած գործ մը, որ նոր ատեններս իւր արժանահաւատութենէն շատ բան տուժած է, քանի որ նոր քննութիւնները նոյն պատմութեան եօթներորդ դարուն՝ եթէ ոչ աւելի ուշ, գրուած ըլլալը ցոյց տուած են[1]։ Հոս բաժանումը դրուած է Արկադիոսի թագաւորութեան սկիզբը։ Շապուհ Թէոդոսէ պարտուելէ ետքը (°°), անոր մահուանէն ետքը խաղաղութեան բանակցութիւններ սկսած է անոր յաջորդին հետ. այս բանակցութեանց առեն համաձայնութիւն գոյացած է Հայաստանի եւ Միջագետքի (!) բաժանման վրայ։ Ասոր հետեւութեամբը Արշակ թողուցած է իւր հայրենատուր տէրութիւնը՝ պարսկական մասը, եւ հեթանոս իշխանի մը տակ չմնալու համար նախամեծար համարած է արեւմտեան փոքրագոյն յունական մասին վրայ իշխել։ Ասոր վրայ Շապուհ թագաւորական պատիւը տուած է Խոսրովի իւր մասին մէջ։ (Խորեն. Գ. խա, խբ։)

---

1 Ղազար Փարպեցի գլ. խ. Langlois, անդ II. 262։

2 Խորենացւոյ արժանահաւատութեան նկատմամբ տես v. Gutschmidt, Kleinere Schriften, III. 332 ff. Գղ. թարգմանութիւնը Langlois, II. 45—175. Գերմաներէնը՝ M. Lauer, des Moses v. Chorene Geschichte Grossarmeniens 1869։

Խորենացւոյ այս պատմածին մէջ ուղիղն ու սխալը խառնամառն դիզուած են։ Հապա՞ 388 Օգոստոսին վախճանած ըլլալով՝ չէր կրնար Թէոդոսի մեռնելէն ետքը (✝ 395 Յունուար 17) Արկադիոսի հետ բանակցած ու բաժանման դաշինքը կնքած ըլլալ։ Բաժիններու թագաւորներուն անուանումն ալ այն կերպով եղած չէ, ինչպէս կը պատմէ Մովսէս։ Արկադիոսի յիշատակութիւնը թերեւս անով կրնայ մեկնուիլ, որ 383էն սկսեալ իբր գահակից իւր հօր հետ եւ մանաւորապէս պետութեան արեւելեան կիսաբաժնին վրայ իշխած է։ Բաց աստի նկատողութեան առնելով որ Մովսէս իւր ձախող ժամանակագրութեան հետեւութեամբը նոյն ժամանակուան դէպքերը սովորաբար եօթ տարի աւելի ուշ կը դնէ[1], այս ճամբով ալ կը տեսնենք որ բաժանման անճիշդ 395 թուականը կը վերածուի՝ 387 ուղիղ թուականին։

Այս 387 տարին մանաւանդ կ՚ընեն վերջապէս քանի մը արեւմտեան տեղեկութիւններ ալ։ Թէոդոս 386ին յաղթութիւն տարած էր Արեւելեան Գոթաց վրայ[2]. առանցմէ ազատած՝ որոշեց որ 387ին աշնան իւր բանակը յափշտակիչ Մաքսիմոսի դէմ քալեցընէ. ասոր սակայն դժուարաւ պիտի համարձակէր, եթէ համոզուած չըլլար, թէ արեւելքի մէջ խաղաղութիւն կը տիրէ եւ Պարսկաստանէն ոչ մէկ կերպով վտանգ կը սպառնայ իրեն։ Միայն Պարսից

1 Ապացուցած է Gutschmidt, անդ։

2 Զոսիմոս, Դ. 38—40։

հետ անհամաձայնութիւններուն հարթուելէն եւ տեւական խաղաղութեան մը հաստատուելէն ետքը կրնար դէպ ի արեւմուտք արշաւանքի ձեռնարկել: Եւ այս կարգաւ ալ կը տողեն պատահած դէպքերը Աւրելիոս Վիկտոր եւ Որոսիոս[1], դարձեալ ապացոյց մը թէ պարսկական խաղաղութիւնը յամենայն դէպս Մաքսիմոսի դէմ մղուած արշաւանքէն յառաջ՝ այսինքն 387 տարւոյն մէջ իսկ տեղի ունեցած է:

Թէոդոս 389 Յունիս 13ին յաղթանակաւ Հռովմ մտաւ եւ ծերակուտի մէջ Պակատիոս Դրեպանոս գաղղիացի ճարտարախօսն կայսեր վրայ՝ անոր ներկայութեանը՝ չափազանց շողոքորթութեամբ լի ներբող մը արտասանեց: Ասկէ ալ յայտնի կ'ըլլայ, թէ Մաքսիմոսի դէմ արշաւանքը չմղուած՝ արեւելեան սահմաններն խաղաղութեան օրինաւոր դաշինքով ապահովուած էին[2]: Այս ըսուածներուն իբր հակառակ չի կրնար յառաջ բերուիլ յաջորդ տեղը. "Հուսկ ուրեմն անոր (այսինքն՝ Պարսկաստանի) ինքնին իսկ այն թագաւորը, որ յառաջ չէր հաճեր զքեզ մարդ դաւանիլ, այժմ իւր երկիւղը կը խոստովանի, եւ զքեզ այն տաճարներու մէջ կը յարգէ, ուր ինքը կը յարգուէր. պատգամաւորութիւն առաքելով եւ պատուական քար եւ մետաքսեղէն ընծայաբերելով, որպէս զի անոնցմով զարդարուին ձաղանացդ կենդանիները

1 Aurelius Victor, epit. 48, 5. Orosius, VII. 34.

2 Pacatius Panegyr. (XII. Panegyr. latini ed. Baehrens) c. 32.

պատերազմիկ կառքդ նստած ատենդ, թէեւ տակաւին դաշնակից չէ, սակայն արդէն պաշտամանդ հարկատու է"։ Տարակոյս չկայ, որ կայսեր համար շողոքորթութիւնը շատ աւելի գրաւիչ կ՚ըլլար, եթէ խաղաղութեան դաշինքը տակաւին կնքուած չըլլար. սակայն ինչպէս համաձայնցընելու է զայս՝ այլուստ հաստատուած իրողութեանց հետ։ Անկարելի է, որ Ճարտարախօսն "ինքնին իսկ այն թագաւորը" խօսքով գրեթէ տարի մը յառաջ վախճանած Շապուհը հասկցած ըլլայ՝ որուն մահն ապահովապէս Հռոմի ծանօթ ըլլալու էր։ Խօսքը կը հայի անոր յաջորդին Վռամ Դ.ի (388–399)։ Ասիկայ պատգամաւորներ ղրկեց կայսեր, որոնք իր գահակալութիւնը կը ծանուցանէին անոր եւ շատ մը ճոխ պարգեւներ կը բերէին. Վռամի նկատմամբ կրնայ ըսուիլ, թէ առանց կերպապէս դաշինք գրած ըլլալու — "թէեւ տակաւին դաշնակից չէ" — կայսեր մատուցած ըլլայ իր բարեկամութիւնն ու յարգանքը — "սակայն արդէն պաշտամանդ հարկատու է"։ Այս խօսքերը բնականապէս հարկատուութեան պարտականութիւն չեն նշանակեր։ Ասոնց հետ ի միասին նկատողութեան առնելով իրենց նշանակութիւնը կ՚ունենան Կղաւդիոսի ոտանաւոր տողերն ալ, զորոնք առաջին հիւպատոսութեան առթիւ ուղղած էր Ոնորիոսի՝ որ իր տղայութեանն ատեն վկայ եղած էր այն դէպքերուն[1]։ Այս տողերը կը հաստատեն, թէ

1 Կղաւդիանոս, Վասն Գ. հիւպատ. Ոնորիոսի ա.

նոյն միջոցին պարսիկ պատգամաւորներ Հռովմ գտնուած են՝ առանց Հայաստանի բաժանման հետ գործ ունենալու, որ արդէն կատարուած վերջացած էր։

Այժմ կը մնայ դեռ քննել Պրոկոպի այս խնդրոյն նկատմամբ պատմածները, որ մինչեւ հիմայ ըսուածներէն կը խոտորին։ Պրոկոպ կը ճառէ հայ յարաբերութեանց վրայ, հիմ ունենալով հայ աղբիւրները — ὥσπερ ἡ τῶν Ἀρμενίων ἱσταρία φησί[1], “որպէս ասէ պատմութիւն Հայոց„ — գլխաւորաբար վերոյիշեալ “Վասն շինուածոց„ գրութեան երրորդ գրքին մէջ։ Բաժանման վրայօք հոն այսպէս կը խօսի[2].

Թագաւոր մը Արշակ անուն իւր պետութիւնը բաժնեց կտակով իւր երկու որդւոցը՝ Տիգրանայ եւ Արշակայ մէջ այնպիսի եղանակաւ մը, որ երկրորդին թողուցածէն չորեքպատիկ աւելի մեծ մաս մը տուաւ առաջնոյն։ Անոր մահէն ետքը, Արշակ՝ որ այս անհաւասար բաժանմամբ տժգոհ մնացած էր, իւր հօր տրամադրութիւնը ջնջելու համար օգնութիւնը խնդրեց Թէոդոս Բ.ի, որ նոյն ժամանակ տակաւին երիտասարդ էր։ Իսկ Տիգրան Հռովմայեցիներէն

---

69 եւն. “Երբեմն զքեզ այս տան մէջ հօրդ հետ նստած տեսան լեզուաւ այլազան ազգեր եւ Պարսից զանազան ազնուականներ, որ դաշնադրութիւն կը խնդրէին„։ Այս ոտանաւորը իբր 404ին գրուած է։

1 Տարակոյս չկայ որ յունարէն լեզուաւ եղած պիտի ըլլան։ Թէ Պարսկ. Պատմ. Ա. 5 մէջ Փաւստոս գործածուած է՝ նոյնպէս տարակոյս չկայ։

2 De aedif. III. 1 (245, 246).

վախնալուն իւր բաժինը թողուց Պարսից, որուն վրայ Արշակ՝ Պարսիկներուն վրէժխնդրութենէն վախնալով, իւր մասը ինչ ինչ պայմաններով (Պրոկոպիոս այս մասին մանրամասնիչ կ'ընէ իւր պատմութեան գիրքը եւ մենք "Պարսկական Պատերազմի„ Բ. 3էն կ'իմանանք, որ այս պայմաններն էին իրեն եւ իւր յաջորդաց համար հարկէ եւ տուրքէ ընդ միշտ ազատ մնալ[1]), յանձնեց Թէոդոսի։ Այսպէսով Հայաստան սաստիկ պատերազմներու ասպարէզ եղաւ Հռովմայ եւ Պարսից մէջ. ի վերջոյ սակայն երկու պետութիւններն օրինական դաշինքով միաբանած են[2], որ Պարսիկք Տիգրանի մասը եւ Հռովմայեցիք Արշակինը պահեն։

Պրոկոպ շատ պղտոր աղբիւրներէ քաղած ըլլալու է իւր այս տեղեկութիւններն, որ չեն միաբանիր մեկալ հեղինակներուն աւանդածին։ Հաւանաբար ասոնք կը բխեն հայ ժամանակակիցներու տեղեկութիւններէն, որոնց մեծամասնութիւնը թոյլ չէր տար խոստովանելու ճշմարտութիւնը, թէ երկու պետութիւնները Հայաստանն իրենց մէջ բաժնած ըլլան ինքնաբերաբար։ Հայք նոյն անհաճոյ իրականութիւնը քողարկել ուզած են զայն հնարելով թէ երկու հայ թագաւորները կամաւորապէս տուած են իրենց թագաւորութիւնները։ Այս պատմուածքը թերեւս հայի այն Արշակունիներու, որոնք 539ին Յուստինիանի դէմ ապստամբութիւն

---

1 Bell. Persic. II. 3 (163 ff.)

2 "Իրենց մէջ կարգադրութեամբ միաբանեցան„։

նուաճած, յետոյ Տիզբոն՝ Պարսից խորքով թագաւորին քով փախչելով՝ անոր առջեւ շահագործած էին ապահարկութեան արտօնութեանց բռնաբարուելուն առարկելը[1]։ Ինչ որ ալ ըլլայ, Պրոկոպի տեղեկութիւնն այլուստ ապացուցուած իրողութեանց հետ միաբանելն անկարելի է։ Ոչ Հռովմ եւ ոչ Պարսկաստան Հայաստանի տէր եղած են կամաւոր տուչութեան ճամբով. Հռովմ իւր բաժինը գրաւեց, երբ բաժանման դաշինքէն քիչ մ'ետքը հարկատու թագաւորութիւնը նոյն բաժնին մէջ ջնջուեցաւ. իսկ Պարսկաստան՝ Պարսկահայաստանը այն երեւակայական Տիգրանին շնորհելովը չստացաւ, այլ բռնի ուժով, այսինքն Պարսից Վռամ[2] թագաւորը 429ին գահընկէց ըրաւ Արշակունի վերջին Արտաշէս թագաւորը, երկիրը գրաւեց եւ վերջապէս պարսիկ Մարզպանի մը տակ պարսկական նահանգի մը վերածեց[3]։ Մինչեւ նոյն ատեն Պարսկական Հայաստանի մէջ տիրող Արշակունեաց շարքն ու անունները ծանօթ են. բայց բոլորովին անընդունելի է, որ Պարսից շնորհքէն կախում ունեցող ստուերական թագաւորներէն մէկը՝ Պրոկոպի պատմածին պէս՝ Հայաստանի նկատմամբ կտակով կարգադրութիւն ըրած ըլլայ, եւ զուր է ու փայրապար՝ նոյն հայ թա-

1 Համմտ. ասոնց խօսքը Պրոկոպ. Պրսկ. պտր. Բ. 3 (163 եւն)։

2 Վռամ Ե. Գոր թագաւորեց 420–438։

3 Հայաստանի վերջանալու մասին տե՛ս Գ. Փարպ. գլ. ժգ–ժե։ Խորենացի Գ. կդ, կէ։

գործոց մէջ Պրոկոպի ակնարկած Արշակը գտնել: Վերջապէս չի յիշատակուիր դարձեալ Թէոդոս Բ.ի կառավարութեան ժամանակ Հայաստանի համար Պարսկաստանի հետ մղուած պատերազմ մը: Իւր երկար կառավարութեան միջոցին արեւելեան պետութեան հետ հաստատուն պահուած խաղաղութիւնը միայն մէկ անգամ 420—422 խանգարեցաւ՝ Պարսից քրիստոնէից դէմ յարուցած հալածանաց պատճառաւ, սակայն նոյն պատերազմին վայրը Հայաստան չէր, այլ Միջագետք[1]: Հայաստանի բաժանումն ոչ նոյն միջոցին տեղի ունեցաւ եւ ոչ ալ քանի մը տարի ետքն, երբ Պարսկահայաստանը գրաւուեցաւ:

Բոլոր այս պատճառներուն համար պէտք է որ Պրոկոպի տուած տեղեկութիւնը մերժենք իբրեւ ոչ արժանահաւատ:

## Բ.

### Հռովմէական Մեծ Հայաստան՝ Յուստինիանոսէն ետքը:

*Թագաւորութեան վախճանը: Հայկական գաւառները: Մեծ Հայաստան հռովմէական գաւառ չէ: Հայաստանի կոմսը: Զինուորական յարաբերութիւններ:*

Հայաստանի հռովմէական պաշտպանութեան ներքեւ մնած մասը — Մեծ Հայաստան

1 Այս պատերազմին նկատմամբ տես Socrates, VII. 8. 18. Nöldecke, Aufsätze, 115. Tabâri, 108. ծան. 2:

(Armenia magna)[1] — կը բաղկանար Անտիտաւրոսի եւ Արածանի գետին հիւսիսային կողմը գտնուող հետեւեալ բարձրագաւառներէն Եկեղեաց, Դերջան, Խորձեան, Կարին եւն. Սեւ Ծովէն բաժնուած էր Պոլեմոնեան Պոնտոս գաւառով, Փոքր Հայքէն՝ Եփրատով. Երասխայ ջրաբաշխը դէպ ի Պարսկահայաստան սահմանն էր, որ սակայն բաց էր եւ անպաշտպան[2]։ Հարաւէն քանի մը գաւառներ կտրուած եւ որդէն գոյութիւն ունեցող հռովմէական սատրապութեանց կցուած էին։ Մեծ Հայաստանի մէջ մեծ քաղաքներ չկային, հին Թագաւորանիստ Արտաշատ եւ Վաղարշապատ[3] քաղաքները կը վերաբերէին Պարսկահայոց։

Մեծ Հայաստանի անդրոգոյն վիճակին վրայ տեղեկութիւն քաղելու համար դրեթէ միայն հայ աղբիւրներու ստիպուած ենք ապաւինիլ։ Նորակազմ հարկատու տէրութեան՝ իւր անդամատեալ վիճակին բերմամբ՝ կը պակսէին այն պայմաններն, որոնք պետական կենսունակ կազմակերպութեան մը համար պէտք էին։ Քաղաքագիտօրէն սխալմունք չէր, երբ Թէոդոս՝ իւր

1 Նաեւ Ներքին (interior) կոչուած. L. 5 Cod. J de off. mag. mil. 1. 29 — magnam Armeniam quae interior dicebatur (Մեծ Հայաստան, որ Ներքին կը կոչուէր). Nov. 31. c. 1. — Յայտնապէս զանազանելու համար Փոքր Հայքէն, որ աւելի յառաջ հռովմէական եղած էր։

2 Համմ. H. Kieperti Asia citerior քարտէզը. Սահմանի յարաբերութեանց նկատմամբ Պրոկ. վասն շին. Գ. 3 (251. 252)։

3 Հոս էր հայ Եկեղեցւոյ գլխոյն՝ Կաթողիկոսի աթոռը։

ձեռօք կարգուած Արշակ թագաւորին մահուընէն ետքը (390/391ին) անոր յաջորդ չդրաւ, այլ յարմար աւելի համարեցաւ Մեծ Հայաստանի թագաւորութիւնը վերցընելու[1]։ Ինչպէս Դիոկղետիանոս իր ժամանակին, այնպէս եւ Թէոդոս նկատի ունենալով երկրին եւ անոր բնակչութեանը յատուկ յարաբերութիւնները, չուզեց զայն հռովմէական պետութեան կցել եւ գաւառի վերածել. նոյնպէս՝ անշուշտ Պարսկաստանի դիւրագրգիռ անվստահութիւնը չյարուցանելու համար՝ հրաժարեցաւ Մեծ Հայաստանը զինուորական ուժով լեցընելէն, այլ բաւականացաւ վարչութիւնը յանձնելու մանաւոր Կոմէսի մը՝ որ արտակարգ ներկայացուցիչ էր։ Հայոց նկատմամբ այնչափ բարեացակամ գտնուելով՝ այս պաշտօնին կոչեց ոչ թէ Հռովմայեցի մը, այլ երկրին աւագներէն մէկը[2]։ Բայց այս բարեացակամութիւնը շատ չանցաւ չար հետեւութիւններ ունեցաւ։ Իրաց նոր կարգադրութենէն - դժգոհ աւագանին, կոմէսին գլխաւորութեամբը, հռովմէական բաժնին վարչութիւնն ու իշխանութիւնը յանձնեցին Պարսից հպատակ թագաւորին, եւ ըստ հայկական տեղեկութեանց՝ կ'երեւայ թէ կայսրն այս եղածին իր հաւանութիւնը տուած ըլլայ[3]։ Ասով Հայաս-

---

1 Մ. Խոր. Գ. խզ.։

2 Ըստ Խորեն. անդ՝ Կազաւոն սատրապը։ Պրոկոպ. վասն շին. Գ. 1 (246) այնու. ասոր հետ կը միաբանի, որ կայսրն՝ այնուհետեւ. կոմէս կ'ընէ «զով որ կ'ուզէ եւ երբ որ կ'ուզէ»։

3 Ըստ Խորեն. Գ. խը, խթ՝ Արկադիոսն է։

տան քանի մը տարի դարձեալ մէկ թագաւորի իշխանութեան ներքեւ միացաւ, որ բնականաբար կը պաշտօնավարէր երկու պաշտպան պետութեանց կրկնակի աւատականի առանձնայատուկ հանգամանաց մէջ. խառնակ յարաբերութիւն մը՝ որ պէտք էր վերջանար, երբ Յազկերտ Ա.՝ 415ին Պարսկահայաստանն իւր որդւոյն աւատ տուաւ[1]: Որչափ որ անկարելի էր մտածել թէ պարսիկ իշխան մը միանգամայն կայսեր հպատակ ըլլար, նոյնչափ ալ անհնար էր որ կայսրը իւր պետութեան մէկ մասին վարչութիւնը ազգաւ Պարսկի մը յանձնէր: Հաւանաբար այս առթիւ երկու պետութեանց մէջ համաձայնութիւն մը գոյացաւ, որով բաժանումը վաւերացուեցաւ եւ նախկին վիճակը վերահաստատուեցաւ[2]: Այս ատենէն սկսեալ Հայաստանը կը կառավարէին դարձեալ հռովմայեցի կոմսեր: Թէ այս կոմսներն այլ եւս հայ չէին, տարակոյս չի վերցներ. որովհետեւ հայ իշխաններէն շատերը, որոնց համակրութիւնը ի վաղուց հետէ աւելի Պարսից կողմն էր քան թէ Հռովմայեցւոց, հռովմէական սահմանները թողած՝ Պարսկահայաստան գաղթած էին[3]: Այս վիճակը տեւեց մինչեւ Յուստինիանու բարենորոգումները[4]:

1 Անդ Գ. ծա: Ղ. Փարպ. դլ. Ը.: Յազկերտ թագաւորեց 399–420:

2 Թերեւս առոր կը հային Պրոկոպի քով (անդ) յիշուած σπόνδαι (միաբանութիւնք), որոնց հետեւութեամբն Հայաստանի կոմսը անուանուած պիտի ըլլայ:

3 Խորեն. Գ. խը:

4 Պրոկոպ անդ. զոր եւ մեր օրերուն կոմս Հայաստանի կ'անուանեն:

Հոս նախ որոշելու է այն խնդիրը, թէ արդեօք Հայաստան նոյն միջանկեալ ժամանակամիջոցին եւ Յուստինիանէն յառաջ՝ հռովմէական գաւառի վերածուա՞ծ է։ Ասոր համար պէտք է հետազօտութիւնը քիչ մը սկիզբներէն բռնել։

Երբ Մեծ Հայք ըսուած հին թագաւորութիւնը Տրայիանոս գրաւեց, այս կայսեր կառավարութեան ժամանակ՝ մեծ Հայաստան անցողակի կերպով կառավարուեցաւ իբրեւ գաւառ, բայց անոր յաջորդները չշարունակեցին իբրեւ գաւառ կառավարելը։ Եփրատայ արեւմտեան կողմը գտնուող Փոքր Հայք (Armenia minor) նախապէս մասն էր Կապպադովկիոյ գաւառին, եւ Դիոկղետիանու պետութեան տուած նոր կարգադրութեամբը միայն ուրոյն գաւառի մը վերածուեցաւ՝ Մելիտինէ մայրաքաղաքով[1], որ դէպ ի արեւելք կարեւոր էր իբրեւ զինուորական կռուան։ Երբ յետոյ Թէոդոս Ա. լաւ եւս կառավարելու դիտաւորութեամբ քանի մը մեծ գաւառներ՝ փոքր գաւառներու վերածեց, Փոքր Հայքն ալ երկու նոր գաւառի բաժնեց, որոնք Առաջին Հայք եւ Երկրորդ Հայք անունն առին. առաջինը կազմուեցաւ Սեբաստիա եւ Սատաղ գլխաւոր քաղաքներով՝ հին գաւառի

1 Marquardt, Röm. Staatsverw. I. 210. 218. Մելիտինէ, յառաջ Կապպադովկիոյ մաս համարուած. յետնագոյններէ կը նշանակուի իբր Փոքր Հայոց մայրաքաղաք։ Պրոկոպ զայն Փոքր Հայոց գլխաւոր քաղաք կ՚անուանէ։ Պարսկ. պատ. Ա. 17 (85), վասն շին. Գ. 4 (254)։

Հիւսիսային մասէն, եւ երկրորդը՝ Մելիտինէ քաղաքով՝ Հարաւային մասէն եւ քանի մը կապպադովկեան երկիրներէ[1]։ Այս բաժանումը պէտք է որ 378—386 կատարուած ըլլայ, եւ ոչ՝ 378էն յառաջ, որովհետեւ Ամմիանոս՝ որուն պատմութիւնը կը հասնի մինչեւ այս տարին, Փոքր Հայքը գիտէ իբրեւ միայն մէկ գաւառ[2], բայց ոչ ալ 386էն ետքը, ինչու որ նոյն տարւոյ մարտ ամսոյն ելած կայսերական հրովարտակ մը արդէն կը յիշատակէ Երկրորդ Հայքն եւ անոր քանի մը քաղաքները[3]։ Notitia dignitatumը կ'ըսէ, թէ Առաջին եւ Երկրորդ Հայք կը վերաբերէին Պոնտական թեմին եւ իրենց գլուխն ունէին մէյ մէկ Նախագահ (Praeses) իբր կուսակալ, իսկ անոնց մէջ զինուորական հրամանատարութիւնը կը վարէր Հայաստանի Դուքսը[4]։ Արդ նոյն Notitiaն անոնց հետ ոչ Մեծ Հայաստան անուամբ գաւառ մը յառաջ կը բերէ, եւ ոչ ալ Հայաստանի կոմէսը կը յիշատակէ. այս նշան մըն է նոյն պետական վիճակագրութեան վստահելիութեան։

---

1 Kuhn, städtische und bürgerl. Verfassung des röm. Reiches II, 211. 243.

2 Ammianus XIX. 9. 12. XX. 11. 4.

3 L. 2 Cod. Theod. de censitoribus etc. 13. 11 (= L. 10 Cod. Just. 11. 47.) Գրատիանոսէ, Վաղենտինիանոսէ եւ Թէոդոսէ, գրուած՝ VI. Kal. Apr. Constantinopoli Honorio et Evodio Coss. Բնագիրը յուստինիանեան օրինագրոց մէջ սրբագրուած է։

4 Notit. dignit. (ed. Seeck) Or. I, 109. 110. II, 49. 50. XXV. 24. 25. XXXVIII.

Որովհետեւ Notitiaյի գրուած ժամանակը (իբր 410—413) քանի որ վերն ըսուածներուն համաձայն՝ Մեծ Հայքն անուամբ միայն կայսրութեան, այլ իրականութեան մէջ Պարսկահայաստանէն կը կառավարուէր նոյն տեղւոյն իշխանին ձեռօք, կը մեկնուի որ հեղինակը զայն իբր պետութեան վերաբերող չէր կրնար նկատել եւ անոր համար լռութեամբ անցնիլ ստիպուած էր։ Սակայն յաջորդ ժամանակին համար ալ փաստ չկայ, որ Մեծ Հայաստան Յուստինիանէն յառաջ իբրեւ գաւառ կազմակերպուած ըլլայ. Նոյն առենուան կայսերական հրովարտակներու մէջ թէեւ Ա. եւ Բ. Հայք կը յիշատակուին, բայց ոչ Մեծ Հայաստան եւ ոչ անոր կոմէսը[1]։ Եւ դարձեալ կարեւորութենէ զուրկ չէ սա պարագան, որ վեցերորդ դարու առաջին տասնեակներուն յօրինուած պետութեան վիճակագրական ուրուագիծը՝ Hieroclesի Synekdemosը (= ընկեր պանդխտութեան), նմանապէս միայն Ա. եւ Բ. Հայք կը թուէ, երրորդ հայ գաւառի մը նկատմամբ բան մը չ'ըսեր, եւ նոյնպէս իւր քաղաքներու ցանկին մէջ զանց կ'առնու Մեծ Հայոց կարեւոր Թէոդոսուպոլիս քաղաքը[2]։

Տակաւին հարթելիք երկու դժուարութիւն կայ։ Վերոնեան օրինագրքի (իբր

---

1 L. 10 Cod. J. de aedif. priv. 8. 10 (Honorius et Theodosius a. 420) — utramque Armeniam. L. 10 § 2 C. J. de diversis officiis et apparitoribus etc. (Leo et Zeno a. 474) — ducum — utriusque Armeniae.

2 Hierocles (ed. Parthey) 37. 38.

297) գաւառներու ցուցակը Պոնտական Թեմի գաւառներուն մէջ ամենէն վերջը կը դնէ Փոքր Հայքը՝ կցելով "արդ եւ մեծն յաւելեալ. (nunc et maior addita)[1]: Դիոկղետիանոսի խաղաղութեամբ ի Հարկէ Հայաստանի Թագաւորութիւնը դարձեալ Հռոմէն որեւէ կախում մ'ունեցած էր[2], սակայն անկարելի է որ այս խօսքերը նոյն կախումն յայտնեն: Իմաստ մը կը ստանան, եթէ ընդունինք, որ անոնք նախնական բնագրին մէջ չկային, այլ իրենց գոյութիւնը կը պարտին Հետագայ խմբագրի կամ գրչի մը: Անիկայ նոյն յաւելուածով կամ Մեծ Հայոց իրօք կատարուած գրաւումը նշանակել ուզած է՝ առանց զայն կերպական գաւառ ցուցընելու, կամ այս անորոշ բացատրութեամբ՝ նոյն միջոցին Փոքր Հայոց Ա ռ ա ջ ի ն եւ Ե ր կ ր ո ր դ Հայք գաւառներուն բաժնումը կ'ակնարկէ[3]: Եւ այս վերջինն այնու աւելի Հաւանական է, որ Պոլեմիոս Սիլվիոս ալ իւր Laterculusին մէջ նման շփոթութեան մը մէջ ինկած է: Վասն զի նմանապէս Հոս կը նշանակուին Պոնտական ութ գաւառներու տակ Մեծ Հայք եւ Փոքր Հայք,

---

1 Codex Veronensis II. 8 առ Seeckի. Notit. dig. 248.

2 Ammianus XXIII. 5. 11. Armenia Romano juri obnoxia (Հայաստան՝ Հռոմ. իրաւանց Հպատակ):

3 Cod. Veronensisի մէջ քանի մը տող յառաջ կայ առ յետնագոյն ընդմիջարկութիւնը Paphlagoniaյի մասին՝ "այժմ երկուքի բաժնուած". որ միայն 395է ետքը տեղի ունեցած նորակազմ Honorias գաւառին բաժանմանը կրնայ հային: Հմմտ. Justin. Novelle 20 pr. եւ Novelle 29, c. 1.

թէեւ այս ցուցակին կազմութեան ատեն (393—399) Փոքր Հայք արդէն տարիներով յառաջ Առաջին եւ Երկրորդ Հայք գաւառներու բաժնուած էր, եւ նոյն միջոցին ընդհանրապէս Մեծ Հայք անուամբ յատուկ գաւառ մը գոյութիւն ունեցած չէ։ Կ'երեւայ՝ թէ հոս ալ ընդունելու ենք, որ հեղինակը տակաւին իրեն ոչ ընտանի Առաջին եւ Երկրորդ Հայք բաժանումը սխալ ներկայացուցած է։ Որովհետեւ յիրաւի հին Փոքր Հայքի բաժանմամբը կազմուած Առաջին Հայք գաւառն աւելի նուազ տարածութիւն մ'ունէր, քան թէ Կապպադովկեան մասերու կցմամբ մեծցած Երկրորդ Հայքը, այնպէս որ Առաջինը յառաջուան պէս իբր փոքր, իսկ Երկրորդը անոր հանդէպ իբր մեծ կրնար նշանակուիլ[1]։

Եթէ Մեծ Հայաստան գաւառ չէր համարուեր, նոյնին գետին ու հողն ալ օրինական մտքով գաւառական երկիր չէր, ինչպէս նաեւ բնակիչներն ալ իբր այսպիսի չէին վայելեր հռովմէական քաղաքացիական իրաւունք[2], եւ հռովմէական արդարութիւն ու օրէնք հոն չէին արժեր։ Ազգային իրաւունք, սովորութիւնք եւ կարգ ու սարք մնացին ի զօրութեան, եւ ասոնց

1 Laterculus Polemii Silvii (Seeck. Notit. dign. 251 ff.) IX.

Եօթներորդ՝ Փոքր Հայք,
Վեցերորդ՝ Մեծ Հայք։

Զ. եւ Է. թիւերու այս զարմանալի եառաջութեան որեւէ մեկնութիւն չեմ կրնար տալ։

2 Mitteis, Reichsrecht und Volksrecht 160.

համաձայն վարչութիւն եւ արդարութիւն ի գործ կը դրուէր ընդհ մեծ ու փոքր նախարարներէն։ Քանի մը հռովմէական իրաւանց սատրիկ հակառակ ամուսնական ու ժառանգական սովորութիւններ բառնալու առաջին փորձն Յուստինիան փորձեց[1]։ Այսպէս ուրեմն Հայաստան թէեւ հռովմէական իշխանութեան ներքեւ նուաճուած երկիր մըն էր, բայց ոչ հռովմէական պետութեան եւ անոր սահմանադրութեան մէկ կազմակերպուած անդամը. Հայաստան աւելի թշնամեաց յարձակումներուն դէմ պաշտպանուելու սահմանուած երկիր մըն էր առանց հաստատուն կազմակերպութեան, որուն տեղական վարչութեան՝ կայսերական կառավարութիւնը այնչափ միայն միջամուխ կ'ըլլար, որչափ որ պետութեան շահը կը պահանջէր։

Երկրին գլուխը կեցած էր Հայաստանի կոմէսը — այս է անոր պաշտօնական տիտղոսը[2] — կայսրմէ անուանուած՝ իբրեւ անոր փոխանորդը, եւ նոյն ատենուան նուիրապետական դասակարգութեան համեմատ գերամեծարութեան աստիճանաւ։ Բայց եթէ կոմէսներու որ դասակարգութեան մէջ դասելու է այս կոմէսը, տեղեկութեանց նուազութեան պատճառաւ դժուարաւ կրնայ որոշուիլ[3]։ Աւելի սահմանաց կոմէս-

1 Յուստ. Edict. 3, Nov. 21.

2 Պրոկ. վասն շին. Գ. 1. (246) զոր կոմէս Հայաստանի կ'անուանէ։ L. 5 Cod. J. de mag. mil. 1. 29.

3 Պէսպէս կոմէսներու նկարագիրը տե՛ս Boecking, Index ad notit. dignit. comes բառի տակ։ Bethmann-

ներու (Comites limitum) մէջ թերեւս դասուի, որոնցմէ Notitiaյի համեմատ արեւելքի մէջ կար մէկ[1], արեւմուտքի մէջ վեց[2] հատ, որովհետեւ Հայաստանն ալ սահմաններու պաշտպանութեան երկիր մըն էր։ Բայց տոր դէմ կ'ելլէ այն պարագան, որ բոլոր սահմանաց կոմսները զինուորական հրամանատարներ էին եւ ըստ այսմ միանգամայն կոմէս զինուորական իրաց (Comites rei militaris)[3]. մինչ Հայաստանի կոմսին ձեռքին տակ ընդհանրապէս բանակ չկար, ոչ կանոնաւոր եւ ոչ ալ օժանդակ գունդեր, եւ զինուորական իշխանութենէ զուրկ էր[4]։

Մանաւոր պատճառներով գաւառի մը կուսակալին ալ կը տրուէր "գաւառի կոմսի" բարձրագոյն աստիճանը[5], բայց Notitiaյի մէջ տոր օրինակ չկայ, որովհետեւ Իսաւրիայի կոմէսը, որ բացառաբար իւր անձին վրայ կը միացընէր քաղաքական եւ զինուորական իշխանութիւնները, իբրեւ կուսակալ էր միայն նախագահ եւ երկրորդաբար զինուորական իրաց կոմէս[6]։ Յատուկ գիրք մ'ունէր սակայն Արեւելից

Hollweg, Röm. Civilprozess III. 13. 53. 80. Kuhn. städt. u. bürg. Verf. d. röm. Reiches I. 194 ff.

1 Comes limitis Aegypti, Notit. Or. XXVIII.

2 Not. Occ. I 30–36. V 126—132. Comes Italiae, Africae, Tractus Argentorensis, Britaniarum etc.

3 Notitiaյի յառաջ բերուած տեղերէն կը հետեւի։

4 Պրոկոպ անդ "վասն զի զինուոր չունէր"։

5 Bethmann-Hollweg անդ 53. 54.

6 Not. Or. I 37. XXIX. "Նորին գերանձնարութեան Իսաւրիոյ զինուորական իրաց կոմսին եւ գահերիցուն տրամադրութեան տակ"։ Սպանիոյ կոմսը (Not. Occ. VII.

կոմէսը. առանց զինուորական հրամանատարու-
թեան՝ իբր գլխաւոր քաղաքական պաշտօնեայ
գլուխ կանգնած էր ամբողջ Արեւելեան թեմին
իւր տասնըհինգ գաւառներովը, եւ ասով անոր
պաշտօնը կը համապատասխանէր բացարձակա-
պէս — աստիճանի եւ իշխանութեան կողմանէ
— միւս թեմերու մէջ գտնուող փոխանորդ-
ներու աստիճանին[1]: Նոյնն տարբերութեամբն
հանդերձ՝ իրօք իւր թեմին փոխանորդն էր:

Զայս նախապէս կարգելէ ետքը, թերեւս
ներելի է այլ եւս ենթադրել, թէ Հայաստանի
կոմէսն ալ Արեւելեան կոմէսին պէս նման դիրք
մ'ունեցած ըլլայ, եւ իրեն ալ՝ որ կայսեր տեղ
թագաւորութիւն մը վարելու եւ կառավարելու
կոչուած էր, բուն իսկ ասոր համար փոխանորդի
մը մասնաւոր իրաւունքները տրուած ըլլան:
Բարձրաստիճան անձնաւորութիւն մը արտա-
կարգի իշխանութիւններով Հայաստանի վրայ
դնելով, կայսրները թերեւս կը կարծէին թէ
ազգային թագաւորութիւնը կորսունցընող մե-
ծամեծներն ու ժողովուրդը աւելի դիւրաւ կը
վաստըկին: Հայաստանի կոմէսն յամենայն դէպս
ունեցած պիտի ըլլայ նաեւ կուսակալի մը ամէն
իրաւունքներն ու պարտականութիւնները, վե-
րին իշխանութիւն (imperium) եւ իրաւասու-
թիւն, ոստիկանութեան հոգը, երկրին ապահո-
վութիւնը, տեղական վարչութեան պաշտօնէից

---

118) լոկ զինուորական հրամանատար էր եւ ոչ գաւառի մը կուսակալ:

1 Not. Or. XXII. Bethmann-Hollweg անդ

վրայ հակակշռի իրաւունքը, երկրին վրայ դրուած տուրք գանձումը[1] եւն. բայց այս բաներէն աւելին իրաւունք ունէր ան, եւ որովհետեւ անոր տրամադրութիւններն ու վճիռները՝ իբր կայսերական անկախ փոխանորդի (sacra vice) տրամադրութիւններ եւ վճիռներ կը տրուէին, ուստի անոր դէմ եղած բողոքը մերձաւոր փոխանորդին չէր ուղղուեր, ինչպէս այլուր սովորութիւն էր. այլ ուղղակի Արեւելքի պրետոր վերակացուին (Praefectus praetorio) եւ կայսեր[2]:

Խռովութեանց կամ պատերազմի երկիւղի պարագային, կոմէսն ստիպուած էր՝ իւր տրամադրութեան ներքեւ զօրք չունենալուն՝ մերձակայ զինուորական հրամանատարներու օգնութեանը դիմել, եւ այս օգնութիւնն անոր կը շնորհուէր, երբ բարձրագոյն զինուորական իշխանութիւնն ունեցողը հրահանգէր, որ էր «մագիստրոսն զօրաց արեւելից»: Օգնութիւն հասցնողներուն ամէնէն մերձաւորը կը նկատուէր Հայաստանի Դուքսը, որուն զինուորական շրջանակը կը բովանդակէր Ա. եւ Բ. Հայք եւ Պօղեմոնեան Պոնտոս՝ երեք գաւառները[3]: Աստ իշխանութեան տակ գտնուող զօրագնդերը կազմուած էին՝ ռակաւ բացառութեամբ՝ պետութեան հեռաւոր տեղերէ. ասոնք արեւելեան

1 L. 13 Cod. J. de ann. et trib. 10. 17 (Anastasius, a. 496) յիշուած «Հայկական եկամուտը» խօսքը կը հայի Մեծ Հայոց:

2 Bethmann-Hollweg անդ III. 56. Karlowa, Röm. Rechtsgesch. I. 856.

3 Notit. dig. Or. XXXVIII.

սահմանի պաշտպանութեան համար հոս տեղափոխուած[1] զօրագունդեր էին՝ որոնք ժամանակին ամփոփութեանը համեմատ իրենց զօրաժողով եղած տեղէն հեռաւոր վայրեր կը գործածուէին: Notitiaյի մէջ նշանակուած՝ մինչեւ Սեւ Ծովու արեւելեան եզերքը տեղաւորուած զօրաց կայաններու շարքին մէջ չի գտնուիր սակայն Մեծ Հայոց մէջ հաստատուած կայան մը, ապացոյց մը թէ գոնէ նոյն ժամանակ հռովմէական զօրք բանակած չէ հոն: Անշուշտ ետքէն փոխուած է այս: Որովհետեւ արդէն Թէոդոս Բ.ի կառավարութեան ժամանակ կարեւորութիւնը զգալի եղաւ՝ թէ Հայաստանը արտաքին թշնամիներու յարձակմանց դէմ աւելի ապահովելու է. եւ այս պատճառաւ Անատոլիոս զօրաց Մագիստրոսը Պարսկահայաստանի ճիշդ սահմանին վրայ, հին Կարին գաւառին մէջ Թէոդոսուպոլիս ամրոցին հիմը դրաւ՝ հռովմէական մնայուն պահակազօրքով[2]: Յաջորդ ժամանակներուն Անաստաս եւ

---

1 Հեծեալ աղեղնաւորները (equites sagitarii) ենզնին իսկ երկրէն էին: Առաջին եւ Երկրորդ Հայկական լէգէոնները — որոնց այս անուանակոչութիւնը՝ Ա. եւ Բ. Հայք բաժանման հետ որեւէ գործ չունի (Ամմ. ի. 7. 1) — անմիջնորդաբար արեւելքի զօրապետին հրամանատրութեան տակն էին. Not. dig. Or. VII, 49, 50: Զօրապետին պալատական Դրօշաւորք պահակագունդին կը վերաբերէին նաեւ "Հայ աղեղնաւոր կոմէտեանք" անդ VI. 31: "Հայոց Երկրորդ Թեւը Եգիպտոսի կոմէսին իշխանութեան տակ փոքրիկ ովասիսի մը մէջ էր. անդ XXVIII, 22.

2 Անատոլիոս 422ի պատերազմէն ետքը դեսպան խաւրուեցաւ Պարսկաստան: Հմմտ. Theophanes, Chronogr. 84. — Նոր ուղղուած է L. 3 Cod. J. de off.

Յուստինիան կայսրները վերածեցին զայն զինուորական վայրի մը՝ պաշտպանողական ամէն պիտոյքներով[1]։ Ինչպէս հոս, ուրիշ ամուր տեղեր ալ հռովմէական գնդեր հաստատուած պիտի ըլլան, բայց թէ ասոնք ուղղակի զօրաց Մագիստրոսի՞ն թէ Հայաստանի Դուքսին տակ կը գտնուէին՝ որոշակի չի գիտցուիր։ Յուստինիանի կառավարութեան միջոցին դադրեցաւ վերջնոյս մասնաւոր դիրքը[2]։

## Գ.

### Հռովմէական-հայկական ստորադասութիւնները։

*Սատրապութիւնները մի առ մի: Մեծ եւ Փոքր Ծոփք: Սատրապներու դիրքը: Զինուորական յարաբերութիւնք: Իրաւական դրութիւնը: Զենոն կայսեր փոփոխութիւնները:*

Յովբիանեան խաղաղութեամբ Հռովմայ մնացած Անգեղ տան եւ Ծոփաց երկու սատրապութեանց վրայ աւելցան Հայաստանի բաժանմամբ Մեծ Հայաստանէն անջատուած քանի մը նորեր ալ, որոնք անոնց հետ կազմեցին հռովմէական-հայկական սատրապութիւնները։ Պրո-

---

milit. iud. 1. 46 յամէ 443։ (Հմմտ. նաեւ L. 7 Cod. J. 12. 59 եւ L. 4 Cod. J. 12. 54, որուն ժամանակը դեռ որոշ չէ։)

2 Պրոկ. վասն շին. Գ. 5 (255). վասն Պարսկ. պատ. Ա. 10 (50)։ Թէոդուպոլսի հիմնարկութեան վրայ ընդարձակ կը խօսի Խորեն. Գ. ծթ.։ Թէոդուպոլիս 502ին մատնութեամբ Պարսից ձեռքն ինկաւ։ Մաղաղիա ՃԸ. 398։ Ըստ Թէոփանէսի (144) պահականդունդը կազմուած էր Լիւբիկեան բանակներէ։

2 L. 5 Cod. J. de off. mag. mil. 1. 29.

կայ՝ հինգ գիտէ սատրապութիւնները, սակայն զանոնք յանուանէ չի յիշեր[1]։ Յուստինիան "ազգաց" անունները մի առ մի կու տայ որոշ կերպով իւր օրինագրոց մէջ երկու տեղ — L 5 Cod. de off. mag. mil. 1. 29 եւ Novelle 31 —։ Սակայն այս երկու տեղերն իրարու հետ չեն միաբանիր ամենայն մասամբ։ "Ազգք, այսինքն՝ Անձիտ, Անգեղտուն, Հաշտեանք, Ծոփք, Փոքր Ծոփք (Sophanena), յորում է Մարտիրոսաց քաղաքն, եւ Բալահովիտ"։ Իսկ Novelle 31, c. 1 § 3 կը յիշատակէ "Փոքր Ծոփք, Անձիտ կամ Մեծ Ծոփք, Հաշտեանք եւ կամ Բալահովիտ[2]"։

Վերջինոյս մէջ ուրեմն կը պակսի Անգեղտուն, որուն զանց առնուիլը կրնայ մեկնուիլ՝ անոր մեծ սատրապութիւններէն միոյն հետ՝ զօր օր. Մեծ Ծոփաց հետ ձուլուած ըլլալովը[3]։ Բայց աչքի կը զարնէ Անձիտի եւ Մեծ Ծոփաց նոյնացումը՝ որ իրարու հետ կը կապուին ո՞վ մը. ինչու որ իրապէս, թէեւ այս երկու երկիրներն իրարու դրացի էին, բայց ոչ երբեք նոյն, այլ միշտ բաժնուած մնացած են[4]։ Նոյնպէս

---

1 Վասն շին. Գ. 1 (246). "Հինգ սատրապք գլուխ էին։"

2 Τζοφανηνή τε καὶ Ἀνζητηνὴ ἢ Τζοφηνὴ καὶ Ασθιανηνὴ ἢ καὶ Βαλαβιτηνή.

3 Անգեղ-տուն՝ վերին Տիգրիսի վրայ՝ սահմանակից էր Մեծ Ծոփաց եւ Անձիտի։ Փաւստ. Գ. ԻԴ.։ Պետրոս Պատր. քով ալ (անդ) կ'ըսուի "Անգեղտուն՝ Մեծ Ծոփաց քով"։

4 Անձիտ՝ Մեծ Ծոփաց հիւսիսակողմը՝ Անտիտաւրոսի հարաւային լանջքին վրայ։

սխալ է, թէ Բալահովիտ՝ Հաշտեանքի ուրիշ մէկ անուն եղած ըլլայ[1], որովհետեւ այս երկուքն ալ տարբեր երկիրներ էին[2]։ Ըստ այսմ միայն ուղիղ համարուելու է օրինագրքին այն տեղն, որ ստորագրութեանց որոշ ցանկը կը բովանդակէ, մինչդեռ Novelleի մէջ նորահաստատ Չորրորդ Հայոց գաւառին վերաբերող երկիրները հարեւանցի միայն ամփոփուած են։

Մեծ եւ փոքր Ծոփք կը կարօտին ընդարձակագոյն քննութեան։

Յունաց եւ Հռովմայեցւոց գործածած սովորական Σοφηνὴ (Τζοφηνὴ, Τζοφανὴ) անունը կը համապատասխանէ հայ Ծոփ կամ Ծոփք եւ ասորական Çuphen անուններուն։ Հին աշխարհագիրք եւ նոյնպէս Հայք՝ Ծոփքը Մեծ Հայաստանի մաս կը դնեն եւ անով կը հասկընան այն երկրամասն, որ կը տարածուէր Արածանիոյ Եփրատ խառնուելու տեղէն մինչեւ Տիգրիսի ճիւղը կազմող Նիմփիոսի հարաւ արեւելակողմը[3]։ Հիւսիսէն Անձիտի, արեւելքէն յայնկոյս

---

1 Մենք Novelleի բնագիրը յառաջ բերինք ըստ ուղագրութեան. Schoell ἡ καὶ Β.ն կը կարդայ՝ ἢ καὶ Β. Սխալը կ'ուղղուի, եթէ ընթերցենք՝ καὶ ἡ Β. καλουμένη.

2 Հաշտեանք՝ Արածանւոյ հիւսիսակողմը լեռնային երկիր մը, որուն մէջ հիմնուեցաւ վերջէն Կլթաւրիճ ամրոցը։ Հաշտեանք ըստ Խորենի. Բ. կը հայ արշակունիներու ժառանգական երկիրն էր։ Պրոկոպ վասն շին. Գ. 3 (251)՝ "Կլթաւրիճ, որ քաղաք է Հաշտենից"։

Բալահովիտ մօտ էր Հաշտենից։ Ըստ Պրոկոպի (անդ) ստորագրութեանց ամենէն փոքրն էր Բալահովիտ։

3 Strabo XI. 12 § 3 "Որ է ընդ մէջ Մասիոսի եւ

Նիմփիայ գտնուող, Ցովփանեան խաղաղութեննէն ի վեր Պարսից վերաբերող Աղձնիքի սահմանը կազմելով՝ հարաւային կողմէն Տիգրիսի վերին ընթացքին վրայէն անդին մինչեւ Միջագետք կը հասնէր: Բայց հոս անորոշ է սահմանը: Ցառաջագոյն Ծոփաց վերաբերող Ամիդը գոնէ չորրորդ դարուն միշտ Միջագետք գաւառին մաս համարուած էր[1]: Ծոփաց բնակչութիւնը խառնուրդ մըն էր հայ եւ ասորա-արամէական ժողովուրդներու[2]: Հայ աղբիւրներու համաձայն երկիրը կը բաժնուէր — խնդրոյ նիւթ չէ թէ նախապէս կամ միայն յետին ժամանակներու մէջ — երկու զատ մասի, որոնցմէ իւրաքանչիւրը կը կառավարուէր սեպհական նախարարներու ձեռօք. արեւմտեան Մեծ Ծոփք, որ Եփրատի վրայ էր, եւ արեւելեան, մինչեւ Նիմփիոս հասնող Փոքր Ծոփք՝ որ անմիջնորդաբար Պարսկաստանին կից ըլլալուն՝ աւելի կարեւոր էր: Վերջինս հոս տիրող Շահունի ցեղին անուամբը՝ Ծոփք Շահունեաց ալ կոչուեցաւ, որմէ Յոյնք եւ Հռովմայեցիք Sophanene անունը կազմած են[3]:

---

Անտիտաւրոսի: Plinius, hist. nat. V. 12. VI. 13. Ptolomaeos V. 12. Kiepert, alte Geogr. 79.

1 Ammian. XVIII. 9. 1. 10. XIX. 1–8. Notit. dign. Or. XXXVI. Hierocles 42. կը յիշէ Ամիդը իբր միակ քաղաք Միջագետք գաւառին:

2 Gelzer, Anfänge der armen. Kirche 153. Սատրապներու Գորգոնոս, Մար, (Զարեհ) եւ նման անունները ցոյց կու տան թէ անոնք ասորի էին ծագմամբ:

3 Փաւստ. Գ. Թ, Ժը. Դ. Դ. իդ եւն: Խորէն. Բ. Ը. Դ. Դ.: Ծոփ-Շահունի կ'ըսուի նաեւ Ծոփք-Շահէ:

Ծոփք՝ հաւանօրէն այն երկու մասերը բովանդակող ամբողջը՝ կանուխէն հռովմէական քաղաքականութեան մէջ մաս եւ բաժին ունեցաւ։ Միհրդատեան պատերազմի ատեն Լուկուլլոսէն գրաւուեցաւ, յետոյ Պոմպէոսէն Կապադովկիոյ Արիոբարզան իշխանին տրուեցաւ եւ Կորբուլոնի արշաւանքէն վերջը, Ներոն կայսեր կողմանէ ստացաւ զայն Ասորին Սոհեմոս՝ իբրեւ հռովմէական աւատ թագաւորութիւն[1]։ Կ՚երեւայ, թէ Ծոփք Ադրիանոսի ժամանակ Կապադովկիայի կողմէն զէնքով գրաւուած եւ անկէ կառավարուած է[2]։ Երրորդ դարուն մէջերը, Հայաստան Սասանեաններէն գրաւուելէն ետքը՝ պէտք է որ Ծոփքն ալ անոնց անցած եւ Հռովմէն իրապէս թող տրուած ըլլայ։ Անընդունելի է որ Ծոփք 297ին տակաւին հռովմէական ստացուածք եղած ըլլայ, որովհետեւ Դիոկղետիանեան խաղաղութեան մէջ բացորոշ պայման դրուած է Ծոփաց անջատումը եւ ոչ թէ լոկ ներկայ վիճակին պահպանութիւնը[3]։ Աղձնեաց

---

1 Tacitus, Annal. XIII. 7. Hist. II. 81. V. 1.

2 Ապպիանոս, Միհր. 105. “Ծոփք եւ Կորդուք, — այժմ Փոքր Հայք — որ հիմա Կապադովկիայէ գրաւուած է„։

3 Ընդհակառակն դաշնադրութեան մէջ որեւէ բան որոշուած չէ Միջագետաց նկատմամբ, որ Հռովմայեցւոց ձեռքը մնաց։ Հմմտ. Պետր. Պատրիկիոսի (անդ) հաղորդած պայմանները։ Ամմիանոսի (ԻԳ. 5. 10.) այն խօսքը, թէ Ներսեհի յարձակման ատեն “Հայաստան՝ Հռովմէական իրաւանց հպատակ, եղած է„, Ծոփաց համար ապացոյցի զօրութիւն չունի։ Հմմտ. Mommsen, Röm. Gesch. V. 445։ Յուլիոս Փեստոսի (14) այն խօսքէն, թէ “խաղաղու-

ալ միասին թողուելէն պէտք ենք հետեւցնել, թէ՝ քանի որ Ծոփաց բաժանումն արդէն նոյն միջոցին կատարուած էր, Ծոփք Շահունեացն ալ Հռովմայ ինկած է. որովհետեւ զինուորական նկատումներն ալ արդէն կ'արգելուին այս մէջտեղ երկնցած երկիրը օտար ձեռքերու յանձնել։ Յովլիանեան խաղաղութիւնը՝ որով Աղձնիք դարձեալ Պարսից ինկաւ, այս մասին փոփոխութիւն մը չըրաւ. Նիմփիոս այնուհետեւ ալ միշտ երկու պետութիւններու սահմանը կազմեց[1]։

Փոքր Ծոփք (Sophanene) իբր երկրի անուն՝ Հռովմայեցիները կը յիշեն չորրորդ դարուն[2], եւ իբրեւ Հայոց Շահունեաց Ծոփքին համապատասխանող մասնաւոր սատրապութիւն կը գտնեմ զայն յիշատակուած նախ եւ յառաջ 387ին Փոքր Ծոփաց սատրապին ուղղուած կայսերական պատասխանագրոյ մը մէջ[3]։ Կ'երեւայ, թէ միւս սատրապութեանց մէջէն ասիկայ նշանաւոր դիրք մ'ունեցած է, եւ ասոր սատրապը

---

թիւն ըլլալով՝ Միջագետք վերահաստատուեցաւ», սակայն միայն կը հետեւի թէ Պարսիկները անկէ քաշուեցան, բայց ոչ թէ՝ կերպապէս Միջագետք Հռովմի տրուեցաւ։

1 Procop. B. Pers. I. 21 (118), de aed. III. 2 (248).

2 Eutrop. brev. VI. 13. Dio Cassius XXXVI. 53 կ'ըսէ «Հայաստանի սահմանակից Σωφανηνὴ երկիրն»։ Իսկ ես կը կարծեմ որ յետնագոյն գրիչ մը Σωφανηνὴ գրած է փոխանակ Σοφηνὴ գրելու։

3 L. 6 Cod. Th. de auro coronario 12, 13 ուղղուած է առ Գադդանաս՝ սատրապ Փոքր Ծոփաց։ Յուստինիանու Novelleն յառաջ՝ Օրինագրոց ժողովածոյքներու մէջ այստեղ միայն մի անգամ յիշուած են սատրապները։

կայսրներէն ըստ իմիք այլոց իբր գլուխ եւ փոխանորդ նկատուած է[1]։ Միայն ասոր Մարտիրոպոլիս մայրաքաղաքն է, որ յաճախ բացորոշապէս յիշատակուած է[2]։ Թէ Փոքր Ծոփաց հետ Մեծ Ծոփաց սատրապութիւնն ալ իւր գոյութիւնը պահած է, չի կրնար տարակուսի տակ ձգուիլ՝ Յուստինիանու վերյիշեալ օրինաց տեղերն ըրած յայտարարութիւններն աչքի առջեւ ունենալէ ետքը։

Ինչպէս որ յառաջագոյն Ծոփք անունը՝ Փոքր Ծոփք (Sophanene) կոչուած մասն ալ կրնար բովանդակել, այսպէս ալ յետնագոյն ժամանակի լեզուին մէջ Sophanene անունը կը գործածուէր առաջնոյն համար ալ[3] եւ նոյն իսկ երբեմն Sophanene անունը իբրեւ հաւաքական գաղափար՝ տրուած է ամբողջ սատրապութեանց միահաղոյն. զ. օր. երբ Պրոկոպ կը խօսի Հայաստանի մը վրայ կոչեցելոյ Սոփանենէ (η Σωφανηνὴ καλουμένη)[4]։ Եւ այս կրնայ նաեւ լուսաբանել թէ ինչու Պոլեմիոս Սիլվիս իւր Laterculusին մէջ՝ արեւելից թեմի գաւառներուն մէջ բացորոշ կերպով կը յիշատակէ

---

1 L. 6ի (անդ) ըմբռնումն այսպէս է կ'երեւայ։

2 Procop. de aedif. III. 2 (248). Bell. Pers. I. 21 (108). L. 5 Cod. J. 1. 29 „Sophanenam in qua est Martyropolis."

3 Ասոր կը հետեւի Եւտրոպիոս (Զ. 13), երբ կ'ըսէ թէ Պոմպէոս Տիգրանէն "Խլեց Ասորիքն, Փիւնիկէն եւ Ծոփքը (Sophanene)„։

4 Հմմտ. Ծան. 2ի մէջ յիշուած տեղերը։

Sophaneneն[1]։ Այս անուամբ գաւառ մը ոչ այն ատեն եւ ոչ ալ յետոյ իրապէս գոյութիւն ունեցած է. ասիկայ որոշապէս կը ցուցուի Codex Veronensisի, Notitia dignitatumի եւ Hieroclesի Synekdemosի լռութեամբը. իսկ Մոմմզէնի ենթադրութիւնը՝ թէ Sophene Ցոփանեան խաղաղութեամբ Պարսկաստանի անցած եւ ետքէն Շապուհ Գ.էն Հռովմայ տրուած ըլլայ, չի կրնար հիմնաւոր նկատուիլ[2]։ Արդ՝ եթէ Laterculusի հեղինակը Sophaneneն գաւառ ըրած է, կամ նման սխալ մը գործած է, ինչպէս վերը Մեծ Հայք անուան նկատմամբ տեսանք, կամ Արեւելեան թեմին մաս համարուող սատրապութիւնները ուզած է նոյն սովորական եւ հաւաքական անուան տակ ամփոփել։ Վերջինը հաւանականագոյն է։

Սատրապութեանց իրաւական դրութիւնը՝ Մեծ Հայաստանի իրաւական դրութենէն էապէս տարբեր էր։ Մեծ Հայք՝ Հռովմայեցի փոփոխուող պաշտօնեայի մը, Հայաստանի կոմսին իշխանութեանը տակ, իբրեւ գրաւեալ եւ միացեալ երկիր մը՝ անընդմիջնորդաբար պետութենէն կը կառավարուէր. մինչդեռ սատրապութեանց մէջ բնիկ նախարարները մնացին հանգիստ իրենց իշխանութեանը մէջ, միայն թէ այնուհետեւ փոխանակ Հայաստանի կամ Պարս-

1 Polem. Silvius (ed. Seeck) VIII. 11. Sophaneneն Euphratesia եւ Hosdroëne անուններէն ետքը կու գայ։

2 Abh. d. sächs. Gesells. d. Wissensch. 1853. III. 233 ff.

կատանի ստորակարգեալ ըլլալու՝ ուղղակի Հռովմէն կախում ունէին։ Սատրապները, պաշտպանեալ թագաւորութեանց[1] արքայիկներուն պէս, բնիկ ժառանգական իրաւանց զօրութեամբը ցկեանս կ'իշխէին իրենց երկիրներուն վրայ, եւ իրենց մահուընէն վերջն իշխանութիւնը կը ժառանգէին օրինաւոր պայազատները[2]։ Ըստ հայ ժառանգական իրաւանց անպայման առաւելութիւն ունէին արք, իսկ կանայք իշխելու իրաւունք չունէին. այսպէս եղած ըլլալու է ապահովապէս նաեւ սատրապութեանց մէջ[3]։ Ընդհակառակն, եթէ թագաւորաց յաջորդութեան համեմատութիւն ըլլուի, անդրանկի իրաւունքը բնաւ երբեք ընդհանուր ճանչցուած չէ։ Ըստ արեւելեան սովորութեան թագաւորը շատ անգամ կենդանութեանը, մեծամեծներու կամ նշանաւոր ցեղակիցներու հաւանութեամբը, բազմաթիւ որդւոց մէջէն յաջորդը կ'որոշէր. եւ սատրապութեանց մէջ ալ այսպէս եղած պիտի ըլլայ[4]։ Կայսերական կառավարութիւնն այսպիսի յաջորդական խնդիրներու մէջ դժուարաւ խառնուած պիտի ըլլայ։ Սատրապներու փոփոխու-

---

1 Ամմ. ԻԱ. 6. 7. կ'ըսէ "Անդրտիգրիսեան թագաւորք եւ սատրապք"։

2 Պրոկոպ վասն շին. Գ. 1 (247) "սատրապները — մինչեւ իրենց մահը սովոր էին կառավարել իրենց երկիրները ժառանգական իրաւանց համեմատ"։

3 Հմմտ. Novelle 21 եւ Յուստինիանու 3 վճիռը։ Ասորական ըսուած օրինագրոց այս կողմերն արժողութիւն ունեցած ըլլալը ծանօթ չէ։

4 Այսպէս էր նաեւ ի Պարսկաստան. Հմմտ. Spiegel Ա. 607. Nöldecke, Tabâri 439.

թիւնը բնականաբար պէտք էր կայսեր իմացընել. եւ եթէ ոչ կերպական հաստատութիւն մը՝ գոնէ տեսակ մը հանդերձանք խնդրուած պիտի ըլլայ, ինչպէս որ սովորութիւն էր արդէն հպատակ իշխաններու համար արեւելեան-հռոմէական եւ պարսիկ պետութեանց մէջ[1]։ Իբրեւ արտաքին նշան իրենց իշխանութեան՝ կայսրն սատրապներուն կը շնորհէր փառահեղ զգեստներ եւ ընդհանրապէս միայն իրեն եւ արքայից արքային վերապահուած ծիրանի հողաթափներ[2]։ Սատրապք ալ իրենց կողմանէ կայսեր՝ իրենց հպատակութիւնն ու անձնանուիրութիւնը կը յայտնէին՝ պատգամաւորներ ղրկելով եւ անձամբ բիւզանդեան արքունիքը ներկայանալով, այս պարագային կրնային պետական սուրհանդակը գործածել[3], ինչպէս նաեւ ըստ երեւութին կամաւոր, բայց իրապէս օրէնք ու սովորութիւն դարձած ձօնի ընծայաբերութեամբ՝ aurum coronarium (պսակի ոսկի) կոչուած — „pro devotione quae Romano debetur imperio" („վասն հպատակութեան որ կը պարտի հռոմ. պետութեան")։ Վերոյիշեալ Գրատիան, Վա-

1 Մաղաղաս ԺԵ (413)։ Թէոփանէս 168։ Ագաթիաս Գ. 15, ուր Լազերու թագաւորներուն նման հանդերձանքը կը նկարագրուի։

2 Պրոկոպ. անդ. մանրամասն կը ստորագրէ։

3 Ammian. XXIII. 7. 9. L. 57 C. Th. de cursu publ. 8. 5 (a. 397). Թէ հոս յիշուած „պատգամաւորք յայլեւայլ ազգաց"ով՝ սատրապութիւնները կը հասկըցուին, շատ հաւանական է, վասն զի այս հրովարտակն ուղղուած է առ Ռեմիսթէոս՝ դուքս Հայաստանի։ L. 16 C. J. 12. 15 այս տեղը կրճատուած ունի։

ղենտիան եւ Թէոդոս կայսերաց փոքր Ծոփաց սատրապին ուղղուած Յունիսի (387) հրովարտակը այս մասին աւելի մերձաւոր տեղեկութիւն կու տայ։

“Կ՚որոշենք որ պսակի ոսկին տրուի ու ընծայուի անոնց, որոնց տալը կ՚երեւայ թէ ապօրինաւորապէս վերցուած է. ըստ նախկին սովորութեան ամէն սատրապք վասն հպատակութեան որ կը պարտի հռոմ. պետութեան, իրենց ստացուածքէն պսակը նային որ ընծայեն մեր վեհափառութեանը[1],,։

Այս արքունի հրովարտակին մէջ ինչ ինչ բան մութ կը մնայ։ Կարծես կ՚երեւայ թէ փոքր Ծոփաց սատրապը միայն՝ առանց միւսներուն, կայսերաց “պսակ„ տալը կարգած ըլլայ. բայց ի՞նչ առթիւ։ Մարդ կը միտի ենթադրելու, թէ ճիշդ Պարսից հետ յաջողապէս կնքուած խաղաղութեան դաշանց առթիւ։ Այս տրամադրութեան արտաքին շարժառիթ տուած պիտի ըլլայ կայսրներուն ուղղուած գանգատ մը կամ մէկ քանի շահագրգիռներու խնդիրքը։ Մէկ երկու տարի յառաջ իրենցմէ տրուած կարգադրութեան մը վրայ յեցած՝ կայսրները հաճ[2] չեն, որ aurum coronariumը իրենց նուիրելու համար բաց ի ըստ սովորութեան պարտաւոր նախարարներէն՝ ուրիշներ ալ մասնակցած են, եւ

1 L. 6 Cod. Th. de aur. coron. 12. 13. — Այս պատասխանագիրը Յուստինիանու օրինագրքին մէջ (10. 76) առնուած չէ։

2 L. 5 C. Th. “Պսակի ոսկին հաւաքելու համար հաճելի է որ ոչ ոք բռնաբարուի արտաքոյ սովորութեան։„

կը սահմանէն, որ ասոնցմէ յանիրաւի առնուած գումարներն ետ տրուին: Կ'որոշէն դարձեալ, որ հին սովորութեան համաձայն (ուստի եւ արդէն սատրապութեանց առաջին ստացման ժամանակէն) այսպիսի պարգեւները ամէն սատրապներն ի միասին հոգալու պարտաւոր են եւ ծախքերը իրենք պիտի ընեն իրենց անձնականէն: Նկատողութեան արժանի է այն ալ, որ կայսերք իրենց կարգադրութիւնն ընելու եւ վճիռ տալու իրաւունքը՝ առ որ հնազանդութիւն կը պահանջին իբր իրենց վեհապետութեան սեպհականութիւնը, կէս մը վեհապետական՝ իրաւունք վայելող սատրապներուն հանդէպ եւս կ'արժեցընեն, եւ թէ՝ թէեւ պատասխանագիրը կերպարէս փոքր Ծոփաց սատրապին ուղղուած է, բայց ըստ բովանդակութեան ամէն սատրապներուն համար սահմանուած է. այս կէտը կը հաստատէ միանգամայն վերոյիշեալ ենթադրութիւնը, թէ այս սատրապն իւր մասնաւոր գերագոյն դիրքովը՝ միւսներուն ներկայացուցիչը համարուած էր:

Սատրապներու երկիրներուն մէջ ալ հռովմայեցի զնդերու կայան չկար. Notitiaյի լռութիւնը եւ Պրոկոպի[1] որոշ վկայութիւնը ասոր վրայ տարակոյս չեն թողուր: Կայսերք բաւական կը համարէին Պարսկաստանի սահմանաց պաշտպանութեան հոգը սատրապներուն

1 Պրոկոպ. անդ. "Հռովմէական զօրք ո՛չ Հայոց թագաւորն ունէր եւ ոչ սատրապք. պատերազմական իրերը անոնք ինքնին կը վճարէին."

եւ անոնց մարտիկներուն թողուլ։ Բուն իսկ պարսիկ սահմանին վրայ գտնուող Մարտիրոպոլիսն իսկ դեռ Անաստասիոս կայսեր կառավարութեան ժամանակ հռովմայեցի պահակազօրք չունէր[1]։ Թագաւորութեան ընդհատ ընդհատ յարձակումները սահմանուած էին սատրապները վանել, իսկ պատերազմի պարագային օգնական զօրք տալ եւ անոնցմով հռովմէական բանակին միանալ[2]։ Սակայն հաստատուն, հռովմէական բանակին վերաբերող զօրագունդեր ալ կային, որոնք իբրեւ կամաւոր կամ իբրեւ վարձկան սատրապներու երկիրներու մէջէն այնպէս կը զինուորագրուէին, ինչպէս որ այլ բարբարոս ժողովուրդներէն սովորաբար էր զինուոր առնուլ։ Այսպէս Notitiaյի մէջ իբրեւ Արեւելեան զօրաց Մագիստրոսին անմիջական հրամանին տակ կը յիշուին կեղծ-կոմսականք (Pseudo-comitatenses)[3] եւ անդրտիգրիսեան երկու հայկական լեգէոններ, անուանակոչութիւն մը՝ որով կրնանք հասկնալ միայն անդրտիգրիսեան գաւառներէն՝ այսինքն սահմանակից հայ սատրապութիւններէն առնուած գնդերը[4]։ Կը յի-

[1] Պրոկոպ. Վ. ատն շին. Գ. 2 (249)։

[2] Օրինակներ կու տայ Ամմ. ԽԱ. 6. 7. եւ այլն։

[3] Այս գունդերուն նկատմամբ տես Gothofredus ի L. 18 C. Th. de re milit. 7. 1. Kuhn, städt. und bürg. Verf. d. Römer I. 135։

[4] Not. dign. Or. VII 58, Boecking, Not. I. 203 Վաղեսի օրինակին հետեւելով՝ այս անդրտիգրիսեանները հռովմէական տեսակէտէ այսրտիգրիսեան կ'ուզէ համարիլ, բայց սատրապութիւնները — ի բաց առեալ Ծոփքը — Հռովմայեցւոց համար յայնկոյս Տիգրիսի էին։

շատակուին դարձեալ՝ հեծեալ աղեղնաւոր կորդուացիք (equites sagittarii Cordueni)՝ Արեւմտեան զօրաց Մագիստրոսին հրամանին ներքեւ[1], եւ թեւ ԺԵ. Փղաւեան կորդուաց (ala XV Flavia Corduenorum) եւ վաշտ ԺԴ. Վաղերեան Զաւդէից (cohors XIV Valeria Zabdenorum) Միջագետքի Դուքսին հրամանին ներքեւ[2], թէպէտ եւ կորդիք եւ Զաւդէք շատոնց կորսուած եւ Պարսից ձեռքն անցած էին, պէտք է միտ դնել, որ գնդերու հին անուններուն պահուիլն՝ չէր նշանակեր թէ յետնագոյն ժամանակներուն ալ զինուորները նոյն գաւառներէն առնուած ըլլան։

Տեղեկութիւն չունինք թէ ինչպէս էր սատրապութեանց մէջ իրաւական դրութիւնը։ Կ'երեւայ թէ սատրապները ընիկ իրաւանց ու սովորութեանց համեմատ կը կառավարէին։ Այս պատճառաւ ալ կարծելու չէ թէ հռովմայեցի բարձր պաշտօնատարներու՝ զ. օր. Արեւելից կոմէսին եւ անկէ ալ Պրետորեան վերակացուին կը բողոքուէր իբրեւ բարձրագոյն ատեաններու։ Ասոնց բողոք ներկայացընելու որեւէ կերպական եւ նիւթական հիմ չկար։ Բողոք կամ խնդիրք մ'առ առաւելն կայսեր կրնար ուղղուիլ, եւ այսպիսի բողոքի մը դէպք է վերը յիշուած պատասխանագրին դէպքը։ Հռովմէա-

1 Not. dign. Occ. VI. 83. VII. 209.
2 Not. dign. Or. XXXVI. 34. 36.

կան բարձրագոյն ատեաններուն միջամուխ չըլլալուն մէկ ապացոյցն ալ այն է, որ Հայաստանի եւ սատրապութեանց մէջ ազգային իրաւունքը՝ որ իւր ամուսնական եւ ժառանգական իրաւունքովն այնպէս կը խտորէր Հռովմէականէն, կրցաւ մինչեւ Յուստինիանու ատեն կանգուն մնալ։ Եթէ Յուստինիան L. 5 C. J. de temp. et repar. appel. 7. 63ին մէջ (529) նաեւ "Հայոց եւ ազգաց" կայսերական արքունիք բողոքել կրնալուն վրայ կը խօսի, ապահովապէս այս նորութիւն մըն է, որ կապ ունի այն բարենորոգումներուն հետ, որոնց վրայ վարը պիտի խօսինք։

Որչափ ատեն որ ազգային թագաւորութիւնը Հայաստանի մէջ իւր գոյութիւնը պահեց, սատրապներն՝ հակառակ իրենց Հռովմէն կախում ունենալուն, յառաջուան պէս իրենք զիրենք իբրեւ հայ եւ իբրեւ աւատ նկատած են Արշակունեաց, որոնց իբր այսպիսի՝ հաւատարմութիւն եւ պատերազմի ատեն օգնել պարտական էին, եւ կ՚երեւայ թէ այս ըմբռնման եւ ասով յառաջ եկած կրկնակի յարաբերութեան Հռովմայեցիք այնչափ կարեւորութիւն տուած չեն, քանի որ Հայաստան՝ գէթ տեսականապէս Հռովմէն պաշտպանուած տէրութիւն կը նկատուէր եւ ըստ այսմ նոյն յարաբերութեամբ հռովմէական շահերը վտանգել չէին երեւար։ Այսպէսով հռովմայեցի սատրապները շատ անգամ գործնականապէս մասնակից եղած են այն ներքին ու արտաքին պատերազմներուն, որոնց

բռնուած է Հայաստան՝ մանաւանդ Յովիանեան խաղաղութենէն ետքը։ Հայ տեղեկութեանց մէջ յաճախ կը հանդիպինք Ծոփաց աշխարհի եւ Շահունեաց Ծոփաց իշխաններուն, որոնք մերթ յարձակում գործող պարսիկ զօրաց դէմ կ'ելլեն, մերթ հաւատարիմ մնալով Հայոց օրինաւոր թագաւորին եւ անոր երկրին, Պարսից կողմն անցնող մեծամեծներուն եւ անոնց կողմանէ պարսկական օգնութեամբ դրուած գահու հետամուտներուն դէմ կը կռուին՝ Հայոց թագաւորին թեւ ու թիկունք եղած[1]։ Այս յարաբերութիւնները դադրեցան հռովմէական Մեծ Հայոց մէջէն թագաւորութեան բարձուելովը։ Երբ ետքէն Պարսկահայք ծանր պատերազմներով պարսկական լուծէն ազատիլ փորձեցին, ի զուր հռովմէական սատրապներուն օգնութեան դիմեցին։ Ասոնք, ինչպէս նաեւ կայսրները անոնց ի նպաստ ամէն միջամտութիւն մերժեցին[2]։

Սատրապներու դիրքն էական փոփոխութիւն կրեց Զենոն կայսեր ժամանակ։ Սատրապները՝ Արեւելեան զօրաց Մագիստրոսին՝ Իլլուսի օրինակին հետեւելով, Անտիոքայ մէջ երեւան եկող Ղեւոնդիոս հակառակաթոռ կայսեր կողմն անցան[3]. Զենոն 488ին ապստամբութիւնը յաղ-

1 Փաւստոս Գ. իդ.։

2 Ղ. Փարպ. գլ. իթ.։ Եղիշէ գլ. գ.։

3 Այս ապստամբութեան նկատմամբ, զոր Վերինա կայսրուհին՝ Լեւոն Առաջնոյն այրին եւ Զենոնի զոքանչը սարքեց. տե՛ս Մաղաղաս ժե. 387 եւն։ Թէոփանէս 127 եւն։ Պրոկոպ. Վանդ. շին. Գ. 1 (247)։

*թանակաւ ընկճելէ ետքը՝ սատրապներու հետ ալ հաշիւ տեսաւ։ Թէեւ սատրապութիւնները չվերցուց, բայց մինչեւ նոյն ժամանակ պաշտօնի գլուխ գտնուողներն իրենց պաշտօնէն վար առաւ, տիրող ցեղերը յաջորդութեան իրաւունքէն զրկեց, եւ որոշեց, որ սատրապներն այնուհետեւ ամէն անգամ ըստ կամս կայսերմէ պիտի անուանուին[1]։ Ժառանգականութեան հետ միաժամանակ ջնջուեցաւ ցկեանս սատրապութիւնը. որովհետեւ սատրապները պաշտօնի կոչելու ժամանակն ալ՝ այնուհետեւ միայն կայսերմէ կախում ունեցաւ։ Զենոն նախկին յարաբերութեան մէջ պահեց միայն Բալահովիտ՝ որուն նախարարը հաւանաբար մասնակցած չէր ապստամբութեան[2]։ Թէպէտ եւ սատրապները այնուհետեւ ալ կայսրը կ'ընտրէր գլխաւորաբար տեղւոյն նշանաւոր անձինքներէն եւ նախկին տիրող ցեղերէն եւ սատրապութեանց կազմակերպութիւնը մեծ փոփոխութիւն մը չկրեց, ի մասնաւորի հռովմայեցի գնդերը հիմայ ալ մնայուն կերպով հոն չհաստատուեցան եւ սահմաններու պաշտպանութիւնն ալ յառաջուան պէս անոնց սեպհական բաժին մնաց[3]. այսու-*

---

1 Պրոկոպ. անդ., "Իսկ մէկալ ամենքը պաշտօնանկ ընելով՝ այլ եւս չթողուց որ իրենց գաւառներուն ժառանգական իրաւամբ տիրանան, այլ սահմանեց որ այնուհետեւ կայսեր հաճելի եղողը յաջորդ ըլլայ սատրապութեան պատուոյն։"

2 Պրոկոպ. անդ։

3 Պրոկոպ. անդ. "Եւ ոչ իսկ սատրապներուն հռովմայեցի զինուոր տրուեցաւ, այլ հայ զինուորներ ըստ հին սովորութեան։"

բաւական են. որով գահ ելլելուն պէս՝ այնպիսի կարգադրութիւններու ձեռնարկեց, որոնք վտանգուած սահմաններն առաւել ապահովութեամբ պիտի պաշտպանէին: Կայսրն որոշեց անկախ զինուորական կազմակերպութիւն մը տալ ի մասնաւորի այս վտանգեալ երկիրներուն եւ հաստատեց այս երկիրներուն համար նոր ինքնուրոյն զօրաց Մագիստրոսի մը պաշտօնը՝ առանց վերցընելու արեւելից Մագիստրոսը, որ մինչեւ նոյն ատեն գոյութիւն ունէր արդէն: Եւ այս գործադրուեցաւ արդէն շատ անգամ յիշատակուած յաջորդ կարգադրութեամբ՝ (L. 5 C. J. de off. mag. mil. 1. 29).

"Ինքնակալ Յուստինիանոս՝ Ա. Ջետեայ առն անուանւոյ զօրապետի վասն Հայաստանի, Պողեմոնեան Պոնտոսի եւ ազգաց:

Երբ Աստուծոյ կամօքը Հռովմէական պետութիւնը մեզի յանձնուեցաւ՝ անձկութեամբ եւ զգուշաւոր փութով քննեցինք ու տեսանք որ պէտք է Հայաստանի, Պողեմոնեան Պոնտոսի եւ ազգաց ալ մեր այս օրէնքովը՝ զօրաց յատուկ զօրապետ մը հաստատել եւ վստահ թէ քու մեծութիւնդ, որ մեծապէս սիրելի է մեզի իւր նախկին գործերովը, յարմար է այդպիսի պատուոյ, առ այդ ընտրեցինք, եւ ինչ ինչ գաւառներ, այսինքն Մեծ Հայք, որ Ներքին ալ կը կոչուի, եւ ազգերը (այսինքն Անձիտ եւն տես էջ 45) եւ Առաջին եւ Երկրորդ Հայք եւ Պողեմոնեան Պոնտոսը յանձնեցինք քու խնամոցդ անոնց

դուքսերուն ի միասին եւ բոլորովին վերցուցինք Հայաստանի կոմէսը, եւ քու իշխանութեանդ տակ կը դնենք ոչ միայն մեր այս հրովարտակով նոր կազմուած երկիրներէն առնուելիք զինուորները, այլ եւ այժմեան եւ արեւելեան եւ այլ բանակներէն սահմանուած զինուորները եւն[1]»:

Նոր վերին հրամանատարին՝ որուն պաշտօնական տիտղոսն էր Մ ա գ ի ս տ ր ո ս զ օ ր ա ց Հ ա յ ա ս տ ա ն ի եւ Պ ո ղ ե մ ո ն ե ա ն Պ ո ն տ ո ս ի ե ւ ա զ գ ա ց (Magister militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentes), իբրեւ իշխանութեան վիճակ յանձնուեցան ըստ այսմ ոչ միայն յառաջ Հայաստանի Դուքսին ենթակայ գաւառները, այլ եւ Մեծ Հայաստան եւ սատրապութիւնները, այնպէս որ բոլոր այս երկիրներն այնուհետեւ մէկ զինուորական շրջանակ կազմեցին: Յուստինիան այս պաշտօնին ընտրած անձին մէջ ալ յաջողութիւն ունեցաւ: Այս պաշտօնին կոչուեցաւ Զ ե տ ա[2], որ Բելիսարի պէս արքունի թիկնապահաց գունդէն յառաջ եկած, պարսկական պատերազմի մէջ նշանաւոր հանդիսացած էր եւ Թէոդորայի քրոջը հետ ամուսնանալով՝ կայսեր

1 Պրոկոպ. ալ (Վասն շին. Գ. 1. 246) կը յիշէ Հայաստանի կոմէսին բարձումն ու զօրաց նոր Մագիստրոսին հաստատութիւնը:

2 Այս անունը մերթ Σίττας (Պրոկոպ. Վասն Պարս. պատմ. Ա. 12. 15. Բ. 3), մերթ Τζίτας (Պրոկոպ. Վասն շին. Գ. 6. Թէոփանէս 175), մերթ Ζτίττας (Մաղաղաս ՃԲ. 429) կը գրուի: 22դ հրովարտակին յառաջաբանն ունի

քնամի եղած[1]։ Իրեն յանձնուեցաւ նորակազմ բանակ մը, որ բաղկացած էր մասամբ նոր գունդերէ, մասամբ Արեւելից զօրաց Մագիստրոսէն առնուած շատ մը լեգէոններէ եւ թիկնապահաց գունդերէ[2]։ Գլխաւոր կայանն էր լաւ ամրացուած Թէոդուպոլիս. կայսրը թոյլ տուաւ, որ դիւանը (scrinarii) կազմուի երկրին ծանօթ Հայերէ[3]։ Զօրաց նոր Մագիստրոսի ներքեւ հրամանատար կարգուած էին ըստ սովորականին շատ մը Դուքսեր. մէկը Մեծ Հայոց մէջ Արտաղեսոն բնակութիւն հաստատած էր, սատրապութեանց մէջ երկու նոր անուանուած Դուքսեր, մէկը Մարտիրոպօլսոյ մէջ, միւսը նոր ամրացուած Կիթառիճի մէջ[4]։ Ընդհակառակն կ'երեւայ թէ Հայաստանի նախկին Դուքսն եւ անոր ազդեցիկ դիրքը բարձուած էին, ինչու որ զօրաց նոր Մագիստրոսն անոր տեղը բռնելու սահմանուած էր։ Նոյնպէս նաեւ դադրեցան սատրապներն զինուորական հրամանատար ըլլալէ, եւ այնուհետեւ քիչ ժամանակ եւս մնացին իրենց պաշտօնին մէջ իբրեւ քաղաքական կառավարիչ։

---

Τζίττας. Ինչ ինչ ձեռագրաց մէջ կայ նաեւ Ζήτας ձեւը։ Այսպէս նաեւ Հրովարտակը։

1 Մաղաղաս ԺԸ. 430. Պրոկոպ Historia areana 9 (59) կը կոչուէր՝ Կոմիտոն։

2 Մաղաղաս անդ — «Թագաւորը զօրավարին զի-ւորներ տուաւ՝ երկու նախագահութիւններէ եւ արեւելքէն։ Յետոյ կ'ըսէ՝ «Զօրս գունդ արեւելեան զօրավարէն։»

3 Մաղաղաս, անդ։

4 Պրոկոպ. Վասն շին. Գ. 2 (248). Գ. 3 (251. 252։)

Ձինուորական այս կազմակերպութեան հետ կատարուած պիտի ըլլայ նաեւ Մեծ Հայոց կերպական գաւառի մը ձեւ ընդունիլը։ Յուստինիան՝ Հայաստանի զօրաց Մագիստրոսին յանձնուած գաւառներուն կարգը կը դասէ Մեծ Հայաստանն ալ, եւ անկարելի է, որ կորենար վերցուցած ըլլալ Հայաստանի մինչեւ նոյն ժամանակ պաշտօնավարող կոմսին պաշտօնը, եթէ միաժամանակ Հայաստանի համար կուսակալի մը գլխաւորութեան ներքեւ քաղաքական վարչութիւն մը տուած չըլլար։ Վասն զի 535ին հրատարակուած 8րդ արքունի հրովարտակին կցուած Notitiaյի մէջ նշանակուած է հիւպատոսական գաւառներու տակ նաեւ Ἀρμενία μεγάλη (Մեծ Հայաստան) նախագահով մը իբր կուսակալ[1]. եւ մենք ամէն իրաւունք ունինք այս կազմակերպութիւնը L. 5 C. J. 1. 29ով տրուած համարելու։ Այս օրէնքը թէպէտ մեզի առանց թուականի հասած է, բայց ներածութեան — cum Romanum nobis sit imperium delatum (= Երբ Հռովմէական պետութիւնը մեզի յանձնուեցաւ) — բառերը մեզի ցոյց կու տան, թէ՝ եթէ ոչ արդէն 528ին, յամենայն դէպս Յուստինիանէ կառավարութեան առաջին տարին հրատարակուած է, եւ այս ժամանակամիջոցը բացորոշ ընդունուած է Մաղաղաս եւ Թէոփան ժամանակագիրներէն՝ որոնցմէ առաջինը յայտնա-

[1] Novelle 8. Not. § 23.

պէս առջեւն ունեցած է այս օրինաց ընագիրը[1]։

Երբ Պարսից խոսրով արքային հետ 533ին Հռովմայեցիք իրենց համար անպատուաբեր խաղաղութիւն ըրին[2], Յուստինիան՝ մինչ իր զօրքերը արեւմուտքի մէջ գոթական տէրութեան վրայ յարձակելու կը պատրաստուէին, հռովմէական պետութեան արեւելեան մասին մէջ տիրող հանդարտութենէն օգտուեցաւ՝ հոն քանի մը կարեւոր վարչական բարենորոգումներ մուծանելու։

Յուստինիանու գովութիւնը ամբողջական չըլլար, եթէ միայն անոր համար գրուածի, որ օրինագրքին (Corpus iuris) հեղինակը հանդիսացած է եւ արեւմուտքի մէջ հռովմէական պետութեան սահմանները յաղթութիւններով ընդարձակած է։ Այս զարմանալիօրէն բազմակողմանի նկարագրին յարգը լիովին ի վեր հանելու համար, պէտք է մանրամասն աչքի առջեւ բերել այն ամէն բան, ինչ որ անիկայ ըրած է իր բազմակողմանի ձիրքերուն, գործառնութեանց ծանօթութեան, գործելու անխոնջ եռանդեան բերմամբն եւ պետական վարչութեան ղանազան ճիւղերուն — արդարութեան, ելեւմտից, շինութեանց, սահմանաց ամրութեան

---

1 Մալալա, Թէոփանէս անդ։

2 Պրոկոպ. Վասն Պարսկ. պատմ. Ա. 22 (113) բացայայտ խաղաղութեան կնքումը կը դնէ Յուստինիանու թագաւորութեան վեցերորդ տարին։ Ranke, Weltgesch. IV. 2. 42 սխալմամբ 531ին կը դնէ։

եւն — մէջ օժանդակ զօրութիւնները յարմար կերպով ընտրելով ու գործածելով։ Իւր օրէնսդրական հրովարտակաց հաւաքածոն պերճախօս վկաներ են բուածին. դժբախտաբար անոնց մէջ ժամանակին հասարակական իրաւանց, վարչութեան եւ տնտեսական յարաբերութեանց վրայօք բովանդակուած ճոխ գանձերը գրեթէ թաղուած մնացած են։ Կ'ընդունինք, թէ Յուստինիանու շատ մը ձեռնարկութիւնները միայն արքունի գանձուն շահերուն ծառայած, եւ թէ հպատակաց բարւոյն համար եղած ինչ ինչ ծրագիրներ՝ գործադրող պաշտօնէութեան նանատակութեամբն ու չարակամութեամբը հակառակ արդիւնք յառաջ բերած են — սակայն եւ այնպէս երբեք կարելի չէ ուրանալ այն մեծ յաջողակութիւնը, որով կայսրն իւր գաղափարները յղացած եւ իւր ծրագիրները գործադրած է[1]։

Վարչական-օրէնսդրական բարենորոգմանց համար առանձին կերպով արդիւնաւոր եղած են 535 եւ 536 տարիները։ Դրամով պաշտօն տալու եւ պաշտօնի հանելու ճարակած անկարգութիւնը՝ ազդուապէս խափանելու համար՝ 535 Ապրիլին տեսակ մը պաշտօնի եւ բարեկարգու-

1 Այսպէս ընել տրուած է մինչեւ անգամ Պրոկոպ., թէեւ ակամայ, իւր Գաղտնի պատմութեանը մէջ։ Անոր չափազանցութիւնները յայտ փոփոխութիւն յառաջ չեն բերեր։ Յուստինիանու արժանիքն ամէնէն լաւ յերեւան կը հանէ Ranke, Weltgesch. IV, 2. 12 ff. 107 ff. Բաւական անքննական ժամանակագրութիւն մը կ'ընծայէ Isambeau, Histoire de Justinien, Paris 1856.

թեան կարգադրութիւն մը՝ 8րդ հրովարտակը (ut magistratus absque ullo suffragio fiant) հրատարակուեցաւ, եւ միեւնոյն ատեն ելաւ 17րդ հրովարտակն ալ (de mundatis principum) իբր գործառնութեանց ընդհանուր հրահանգ՝ գաւառաց կուսակալներուն համար։ Այս հիմնական օրէնքներուն վրայ ետեւէ ետեւ աւելցան մասնական գաւառական կանոններ՝ մանաւանդ բազմաթիւ կանոններ ասիական գաւառներուն համար, որոնց մէջ տանց նոր սահման եւ նոր կազմակերպութիւն տրուած են եւ կուսակալներուն պարտականութիւնն աւելի ի մերձուստ կանոնաւորուած է. մէկ քանի գաւառներու մէջ զինուորական ու քաղաքական վերին իշխանութիւնն ինչ ինչ պատճառներով կուսակալին անձին վրայ միացուեցան[1], որով Կոստանդիանոսէ ի վեր այս պաշտօններու կանոնաւորապէս պահպանուած անջատումը վերցաւ։

Հայ երկիրներն ալ (ἡ τῶν Ἀρμενίων χώρα) 536 Մարտին 31րդ արքունի հրովարտակով նոր կազմակերպութիւն ընդունեցան[2]։ Արդէն գոյութիւն ունեցող երեք գաւառներուն՝ Ա., Բ. եւ Մեծ Հայոց վրայ աւելցաւ ստորա-

---

[1] Այսպէս Պիսիդիոյ մէջ՝ Nov. 24, Լիկաոնիոյ մէջ Nov. 26 Թրակիոյ մէջ Nov. 27 եւն։ Այս ամէն օրէնքներն ուղղուած են առ Յովհաննէս Կապադովկեցի՝ որ Յուստինիանու ամենազօր պաշտօնեան էր այն ժամանակ ու սիրելին։ Աստ վրայ տես Պրոկոպ. Վասն Պարսկ. պատմ. Ա. 24 (121 եւն)։

[2] "Վասն կազմակերպութեան չորից իշխանացն Հայոց"։

պութիւններէն ձեւացած Չորրորդ Հայք մը․ միեւնոյն ժամանակ գաւառներն նոր անուանակոչութիւններ ընդունեցան եւ կուսակալները (մէկի բացառութեամբ) բարձրագոյն աստիճան եւ նոր տիտղոս։

1. Այժմ Ա. Հայք անուանուած գաւառը կը համապատասխանէր քիչ յառաջ հաստատուած Մեծ կամ Ներքին Հայոց, բայց այնպէս մը, որ անոր տարածութիւնը նախկին Ա. Հայքէն եւ Պոնտոսէ առնուած քանի մը քաղաքներով (Սատաղ, Նիկոպոլիս, Կիրասոն, Տրապիզոն եւն) զգալաբար ընդարձակուեցաւ եւ առով ծով հասաւ[1]։ Մայրաքաղաք եղաւ յառաջուան Բազան (Bazanis), որուն անունը ի պատիւ կայսեր փոխուեցաւ եւ եղաւ Յուստինիանուպոլիս[2]։ Կուսակալն էր Գերամեծարութեան (Spectabilis) աստիճան ունեցող փոխհիւպատոս մը[3]։

2. Բ. Հայք ձեւացաւ հին Ա. Հայոցմէ, եւ Պոնտոսէ ու Հելլենոպոնտոսէ առնուած քանի մը քաղաքներէ. առով տեղը եկաւ ինչ որ Ա. Հայոց տուած էր։ Գլխաւոր քաղաքը մնաց յառաջուան պէս Սեբաստիա. եւ կուսակալն ալ պահեց նախագահի (Praeses) աստիճան եւ դիրք[4]։

---

1 Nov. 31 c. 1 pr.

2 Nov. 31 c. 1 pr. *Βαζανίς*, Պրոկոպ. Վասն շին. Գ. 4. 5 (254. 256) *Βιζανά*.

3 Յուստինիան այս պաշտօնին կոչեց իր օրրելին Ակակիոսը։ Պրոկոպ. շատ վատ կը խօսի անոր վրայ, Վասն Պարսկ. պատեր. Բ. 3 (159).

4 Nov. 31 c. 1. § 1. Nov. 8. Not. § 43.

3. Գ. Հայքն էր հին Բ. Հայք՝ Մելիտինէ գլխաւոր քաղաքով, անփոփոխ տարածութեամբ։ Բայց իբրեւ կուսակալ դրուեցաւ մինչեւ նոյն ատենուան նախագահի տեղ, Յուստինիանեան կոմս մը գերամեծարութեան աստիճանաւ[1]։ Միւս երեք կուսակալներուն հակառակ՝ ասոր յանձնուեցաւ քաղաքական վարչութեան հետ զինուորականն ալ, ապացոյց մը, թէ կայսրն որպիսի կարեւորութիւն ընծայած էր ճիշդ այս տեղւոյն[2]։

4. Դ. Հայքը կազմեցին սատրապութեանց, ազգաց երկիրները, «որ յառաջ գաւառային կազմակերպութիւն չունէին, այլ իրենց մէջ կը բաժանուէին պէսպէս օտար ազգեր — եւ սատրապներէ կը կառավարուէին» — ասոնք նոր գաւառի մը միացուելով ու կազմակերպուելով, եւ այն ալ Հիւպատոսի աստիճանաւ նախագահի մը ներքեւ իբրեւ կուսակալ։ «Նոյն գաւառը դրինք վարչութեան մը տակ, որ քաղաքային կազմակերպութիւն ունի — այս գաւառը ստորադաս վարչութիւն ունեցողներուն կարգէն է, ըստ որում զայն հիւպատոսական գաւառ ըրինք[3]։»

Գլխաւոր քաղաքները մնացին, երկու Դուքսերուն իբր կայան յիշատակուած Մարտիրոպոլիսն եւ Կիթառիճը։

---

1 Nov. 31 c. 1. § 2. Ըստ c. 2ի Թովմաս անուանուեցաւ Յուստ. կոմէս։ Ըստ Nov. 8. Notit. § 22ի՝ նախկին նախագահը լոկ հիւպատի աստիճան ունէր։

2 Nov. 31. c. 3.

3 Nov. 31. c. 1. § 3.

Հռովմէական քաղաքային վարչութեան հաստատութեան՝ սատրապներու գոյութիւնն անհիմնական էր. անոնք կորսնցուցին իրենց պաշտօններն ու աստիճանները[1], եւ այսու արեւելեան Հռովմէական պետութեան մէջէն անհետ եղաւ աւելի քան երկուհարիւր տարիէ ի վեր իւր գոյութիւնը պահպանած կարեւոր տեղական եզականութիւն մը։ Ինչ ինչ սատրապութեանց անունները սակայն տակաւին տեւեցին իրենց քաղաքական ջնջումէն ետքն ալ. անոնք իբրեւ գաւառներու անուն երկար ատեն գործածութեան մէջ մնացին եւ դեռ եւս յետնագոյն ժամանակներու մէջ կը գտնուին եկեղեցական թեմերու եւ այլ գաւառական ցուցակներու մէջ[2]։

Հայաստանի նորոգ կազմակերպութիւնը միայն քաղաքական նշանակութիւն ունէր՝ ոչ թէ եկեղեցական. մետրապոլտական եւ թեմական յարաբերութեանց մէջ՝ կայսեր բացարձակ կամաց համաձայն ամենեւին փոփոխութիւն պիտի չմտցուէր, մանաւանդ թէ ամենայն ինչ հին վիճակին մէջ պիտի մնար. այս յարաբերութեանց վրայ աւելի մանրամասն խօսիլը մեր նպատակէն դուրս կը համարինք[3]։

---

1 "Թագաւորը պէտք տեսաւ սատրապներն անկէ վերցնելու.„

2 Partheyի քով (Hierocles, էջ 90) գտնուած թեմերու ցանկը, որ Լեւոն Իմաստնոյն ժամանակէն է, կը յիշէ Չորրորդ Հայոց մէջ՝ Ծոփքը, Հանձիթը, Բալահովիտն ու Հաշտեանքը։

3 Nov. 31. c. 2. § 1. Նման է Պափլագոնիոյ համար Nov. 29. c 1.

Գաւառներու կերպարանափոխութեան հետ՝ իրաւական դրութեան եւ ի մասնաւորի աստիճանաբար ատեանէ ատեան բողոքելու. Յուստինեան ինչ ինչ բարեկարգութիւններ մերձուստ յարաբերութիւն ունին. Գաւառական կուսակալաց իբրեւ սովորական դատաւորաց (iudices ordinarii) վճիռներուն դէմ բողոքը՝ սովորաբար կ'ըլլուէր ամէնէն մերձաւոր բարձրակարգ փոխանորդներու (Vicarii) կամ ուրիշ գերամեծար դատաւորաց (iudices spectabiles)՝ բաւական որ բացառաբար Պրետորաց վերակացուին ձեռնհասութիւնը (competence) միջամուխ չըլլար[1]։ Գերամեծարներու դատավճիռներուն դէմ, որոնք յանուն կայսեր (sacra vice) կը տրուէին, բողոք կ'ըլլար միայն ուղղակի կայսեր։ Բայց արդէն Թէոդոս Բ. եւ Վալենտինեան իրենց արեւելեան հռովմէական պետութեան մասին համար 440ին տուած օրէնքին մէջ, L. 32 C. d. de appell. 7. 62[2], գերամեծար դատաւորաց դէմ եղած բողոքն առաքած էին Արեւ. Պրետորաց վերակացուէն եւ Պալատան գանձապահէն (Quaestor sacri palatii) կազմուած մնայուն մասնաժողովի մը, որ ըստ իմիք իբրեւ վերին արքունի ատեան վճիռ կու տար։ Յուստինիանոս ամէն կերպով ջանաց այս ատեանը կարելի եղածին չափ կեր-

1 Bethmann-Hollweg, Röm. Civilprozess III. 56 ff.

2 440 թուականը P. Krüger հաստատուցած է. L. 2. C. J. 7. 63 եւ L. 1. C. J. 3. 4. իրարու հետ համեմատելով։

պատուիրել մեծ դատերու համար, զայն ընչքին խնդիրներէ ազատել եւ դատի դիմողներուն ժամանակ, յոգնութիւն եւ ծախք խնայելու համար[1]՝ իրաւական գործը գաւառներու մէջ մինչեւ ցայժմ եղածէն աւելի ապակենդրոնացընել։ Իւր 24, 25, 26 եւ 27րդ հրովարտակներովը 535 տարին սկսած բարենորոգումները, բաց ի Թրակիայէն, ամէնէն աւելի կը հայէին Ասիական թեմէն Պ ի ս ի դ ի ա (հրովր. 24) եւ Լ ի կ ա ւ ո ն ի ա (հրովր. 25) գաւառներուն, եւ Արեւելեան թեմէն[2] Ի ս ա ւ ր ի ա (հրովր. 27) գաւառին։ Երկու ամիս ետքը հանուեցան 28 եւ 29րդ հրովարտակները Պ ո ն տ ո ս թ ե մ ի ն վերաբերող Հ ե ղ ե ն ո պ ո ն տ ո ս եւ Պ ա փ ղ ա գ ո ն ի ա գաւառներուն համար[3]։ 535էն ետքը տրուած օրէնքները վարը պիտի յիշատակուին։ Այդ՝ նորակազմ գաւառաց վրայ դրուած կուսակալներուն իրենց նշանակութեան (մէկ քանիները, ինչպէս վերեւ յիշատակուեցաւ, իրենց անձին վրայ կը միացընէին քաղաքական եւ զինուորական վարչութիւն)[4] համապատասխանող արտաքին երեւոյթ մը տալու համար՝ կայսրն անոնց շնորհեց Պ ր ե տ ո ր,

1 Nov. 23 c. 3. Nov. 24 c. 5 i. f.

2 24–27 հրովարտակները 535ին միեւնոյն օրը հրատարակուած են թուականաւ՝ XV. Kal. Jan. Belisario v. c. cons.

3 Երկուքին թուականն ալ է՝ XVII. Kal. Aug. Belisario v. c. cons. Հեղենոպոնտոս գաւառը կազմուեցաւ նախկին Պոլեմոնեան Պոնտոս եւ Հեղենոպոնտոս գաւառներէ. Nov. 28 Praef.

4 Տես էջ 64. ծան. 4.

Փոխհիւպատ, կոմէս կամ Զափաւորող (Moderator)[1] յատուկ տիտղոսներուն հետ առանց բացառութեան գերամեծար (Spectabiles) աստիճանը, եւ զիրենք ատով հաւասարցուց փոխանորդներու՝ իրենց նախկին մեծերուն։ Աստիճանաբար առեւանէ առեւան եղած բողոքներու մասին յէականս հետեւեալ կարգադրութիւնն ըրաւ։

Նոր կուսակալներն իբր կայսերական բարձրագոյն դատաւոր — secundum sacri auditorii formam — կը վճռէին իրենց դատաւորներէն եկած ամէն բողոքները, եւ այն՝ մինչեւ 500 ոսկուոյ (solidi) արժողութեամբ վէճերու մէջ — ἄχρι πενταχοσίων ναμισμάτων — այլ եւս վերջնականապէս ամէն իրաւական միջոց չզօրեցընելով[2]։ Իսկ աւելի մեծ խնդիրներու մէջ, եւ կամ երբ իրենք վճիռ մ'արձակած էին իբրեւ առաջին ատեան, այն ատեն բողոքը կ'ուղղուէր ուղղակի կայսերական արքունի ատենին, այսինքն Պրետորաց վերակացուին (Praefectus praetorio) եւ կայսերական պալատան դանձապահին (Quaestor sacri palatii)[3]։ Եւ որովհետեւ այս նորո-

---

1 Պրէտոր Պիսիդիոյ, Լիկաւոնիոյ, Թրակիոյ, Պափլագոնիոյ. Մոդերատոր Հելլենոպոնտոսի. Իսկ Իսաւրիոյ՝ Նախկին Comes per Isauriam տիտղոսը (Not. dign. Or. XXIX) պէտք է այս միջոցներուն ջնջուած ըլլայ, վասն զի Հիերոկլէս (Parthey 39) կը յիշէ "Իսաւրիոյ եպարքոսութիւնը՝ Պահերէցի մը տակ"։

2 Nov. 24 c. 5. Nov. 25 c. 6. Nov. 26 c. 5. Nov. 27 c. 2. Nov. 28 c. 8. Nov. 29 c. 5.

3 Nov. 24 c. 4. Nov. 25 c. 5 § 3.

գաւթեամբ աւելորդ եղած էին Ասիական եւ Պոնտական (Asiana եւ Pontica) վիճակաց փոխանորդութիւնները (Vicariat), ուստի Յուստինիանոս անոնց տակաւին մնացած միւս պաշտօնները փոխադրեց եւ տուաւ՝ Ասիական թեմին համար (Dioecese Asiana) Պակատեան Փռիւգիոյ Յուստինիանեան նոր կոմէսին (Comes Justinianeus Phrygiae Pacatianae) եւ Պոնտական թեմին համար՝ Ա. Գաղատիոյ կոմէսին (Comes Galatiae primae)[1]. իսկ Պոնտական վիճակին (Tractus Ponticus) համար փոխանորդ մը կրկին հաստատուեցաւ 548ին միայն[2]։

Այս մասնական օրէնքներուն յաջորդեց 536 Յունուարին սկիզբը բողոքարկութեանց վերայ ընդհանուր կարգադրութիւն մը՝ Տրիբոնիանի ուղղուած 23րդ հրովարտակը (III Non. Jan. post. Beliasarii v. c. cons.)։ Ասոր առաջին գլխոյն մէջ բողոքման վերջնական վճռաժամերը (fatale decendii) յընդհանուրն միայն որոշուած են՝ փոխանակ հին իրաւանց բողոքման կարճ ժամանակամիջոցներուն. երկրորդ գլուխը կը հայի նոյն իսկ կայսեր առջեւ ըլլալիք դատաստանաց. աստիճանաբար ատեանէ ատեան բողոքի համար արժող կարգաւորու-

---

1 Երկուքն ալ Nov. 8 Notit. § 3. 4. յառաջ կը բերուին իբրեւ գերամեծար։ Երկու փոխանորդներու բարձումն ու անոնց տեղ դրուած կոմէսները բացայայտ կը ճշտուին Nov. 24 c. 4 եւ Nov. 20 c. 6.

2 8դ. Հրամանագրով։

թիւնները կը գտնուին երրորդ եւ չորրորդ գլուխներուն մէջ: Ըստ այսմ պետութեան արեւելեան երկիրներէն եղած այն բողոքներն, որ տասը լիտր ոսկւոյ արժէք ունեցող — ad decem librarum auri quantitatem — խնդիրներու կը հային, ո՛չ այնուհետեւ մայրաքաղաքին[1] գլխաւոր դատաւորներուն առջեւ պիտի չհանուին, այլ Եգիպտոսի եւ Լիբիոյ համար աւգոստափառ վերակացուէն (Praefectus augustalis)[2], արեւելեան թեմին համար՝ արեւելեան կոմէսէն[3], եւ Ասիական ու Պոնտական թեմերուն գաւառներուն համար անոնց համար յատկապէս որոշուած գերամեծար արանց (viri spectabiles) կողմէն, — "այսինքն՝ կոմէսներէ կամ փոխհիւպատներէ կամ պրետորներէ կամ չափաւորողներէ, որոնց յատուկ կերպով յանձնուած ենք այդպիսի վէճերը վճռել„ — (կ'իմացուին վերոյիշեալ եւ առաջնոյն պատուոյ աստիճանաւ անուանելի կուսակալները) "փոխանակ տեղապահի կայսեր„ (vice sacri cognitoris) դատերը պիտի վարուին եւ վերջնականապէս պիտի վճռուին՝ չթողլով ամէն անդրադարձին բողոքի տեղի (nulla post sententiam.

1 Արդէն Յուստինիան սահմանած էր (L. 37 C. de appell. 7. 62. a. 529), որ կայսեր եղած բողոքները, երբ խնդիրը 10 լիտր ոսկիէ աւելի չէր, քննէ ու վճռէ կայսրմէ անուանուած տեղապահ մը:

2 Այս աստիճանն է անմիջապէս Պրետորաց վերակացուէն ետքն ու փոխանորդներէ յառաջ:

3 Տարակուսական կը մնայ Իսաւրիոյ նոր կոմէսին՝ գերամեծարութեան աստիճան ընդունելէն ետքը՝ Արեւելեան կոմէսի իշխանութեան տակ մնացած ըլլալը:

definitivam appellatione porrigenda[1]): Իսկ այն պարագաներու մէջ, ուր Գերամեծար կոչուածներուն վճռոյն դէմ բողոք թոյլ տրուած է (ըստ այսմ այն խնդիրներու մէջ, ուր գումարը 10 լիտր ոսկիէն աւելի է, կամ այն պարագայի մէջ, ուր անոնք առաջին ատեանն ըլլալով վճիռ տուած են), բողոքը կ'երթայ կամ կ'ուղղուի միայն եւ միայն՝ Պրետորեանց վերակացուին եւ պալատան գանձապահին ատեանը[2]:

23րդ հրովարտակին հանուելէն ետքը, 536 տարւոյ ընթացքին մէջ՝ վերն յիշատակուածներուն նման դեռ շատ մը գաւառներու համար նմանօրինակ մասնական օրէնքներ հանուեցան: Հրովարտակ 30րդ (XV. Kal. April. p. c. Belisarii c. v.) Կապպադովկիոյ համար, որուն փոխհիւպատին նոյնպէս անկախ ձեռնհասութիւն տրուեցաւ մինչեւ 500 սկուտի (solidus) վերաբերեալ խնդիրներու մէջ[3]. եւ նոյն օրը հանուած 31րդ հրովարտակը հայ գաւառներու համար, որոնց վրայ վերը խօսուած է: Յաջորդաբար ելաւ 102րդ հրովարտակը (IV. Idus Jun. p. c. Belisarii) Արաբիոյ չափաւորողին եւ 103րդ հրովարտակը (Kal. Jul. p. c. Belisarii) Պաղեստինի փոխհիւպատին համար, գաւառական օրէնքներուն միակն, որ միւսներէն

---

1 Nov. 23 c. 3.

2 Nov. 23 c. 4.

3 Ա. եւ Բ. Կապպադովկիա գաւառները, որ մինչեւ նոյն ատեն իրենց գոյութիւնը պահած էին, մէկ գաւառի վերածուեցան այնու հետեւ, Nov. 30 c. 10.

տարբերելով՝ 23րդ հրովարտակին տասը լիտր ոսկւոյ գումարը իբր որոշիչ սահման կը հաստատէր[1]։ 548 տարւոյն մէջ (XV. Kal. Oct. Imp. Div. Justiniani P. P. aug. anno XXI) Պոնտոսի նորահաստատ փոխանորդին համար հանուած կարգադրութեամբ դարձեալ «500 սկուտը» մէջտեղ ելաւ[2]։

Քանի մը կէտեր տակաւին կարօտ են լուսաւորութեան։ 24րդ հրովարտակի 5րդ գլխոյն եւ 25րդ հրովարտակի 6րդ գլխոյն մէջ Պիսիդիայի եւ Լիկաւոնիայի Պրետորներուն համար տրուած դատական ձեռնհասութիւնն որոշելու ժամանակ՝ բացորոշ կերպով մատնանիշ կ'ըլլուի բողոքի վերաբերող նոր հրատարակուած կայսերական սահմանադրութիւն մը[3], որ սակայն մեզի աւանդուած հաւաքածոյից եւ ոչ մէկուն մէջ կը գտնուի։ Անկարելի է, որ անով 23րդ հրովարտակը հասկցուի, ինչու որ թուականին նայելով, որուն հարազատութեան վրայ տարակուսելու ամենեւին տեղի չկայ, ասիկայ 24րդ եւ 25րդ հրովարտակներէն աւելի յետնագոյն է. բաց աստի վերեւ յառաջ բերուած — «Որոնց յատուկ կերպով յանձնած ենք այդպիսի վէճերը վճռել» — խօսքերը անհ-

1 Nov. 103 c. 1.

2 Ediet. Just. 8 c. 1 § 2.

3 Nov. 24 c. 5 — «Որովհետեւ վերջերս հրատարակուած կարգադրութեամբ մը սահմանած ենք, որ 500 սկուտէ վեր չեղող իրաց հայող բողոքը քննուի գերամեծարութեան աստիճան ունեցողներէն»։ Nov. 25 c. 6՝ «Ըստ մեր վերջերս գրած օրինաց»։

յայտնի ցոյց կու տան յառաջագոյն տրուած գաւառական օրէնքները։ Ուստի երկու հրովարտակներու մէջ գտնուած յայտնի վկայութեան համեմատ, որ 31րդ հրովարտակով ալ հաստատութիւն կը գտնէ[1], արդեամբք եւս գոյութիւն ունեցած է այսպիսի հին, հաւանաբար 535ին տրուած հրամանագիր մը։ Արդ Յուստինիանոս այնչափ անխելք եղած պիտի չըլլայ, որ քանի մ'ամսուան մէջ կատարելապէս նոր բովանդակութեամբ երկու օրէնք հանած ըլլայ. հին սահմանադրութիւնն եւ 23րդ հրովարտակն ըստ այսմ բոլորովին իրարու յար եւ նման եղած պիտի ըլլան։ Կրնայ ընդունիլ, որ անիկայ միայն նոր կազմակերպուած գաւառներուն հայած եւ ասոնց համար կանոնաւորած ըլլայ դատական իշխանութեան յարաբերութիւնը, մինչդեռ 23րդ հրովարտակը — նկատի չառնելով բովանդակ պետութեան համար արժէք ունեցող երկու առաջին գլուխները — արեւելքի բոլոր թեմերուն համար իրաւական իշխանութեան խնդիրը կարգի դնելու սահմանուած ըլլալով՝ ըստ այսմ ալ բացարձակապէս ընդհանրական զօրութիւն եւ արժողութիւն ունէր։ Բովանդակութեան կողմանէ երկուքին մէջ եղած ուրիշ տարբերութեանց վրայ վարը յիշատակութիւն պիտի ըլլայ։ Այսպէսով կը բացատրուի, թէ հին օրէնքին ետեւէն անմիջապէս նորն ելլելով եւ բովանդակութեան կող-

1 Nov. 31 c. 1 եւ 3 „Եւ որովհետեւ մեր ջանքն-այն եղաւ որ, եւն։

մանէ ալ այս նորը գաւառական մասնաւոր կարգաւորութիւններուն տեղը բռնած ըլլալով՝ հինը հռովմէականներու ծանօթ հաւաքածոյից մէջ մուտք չգտնելով շուտով մոռացութեան մատնուած է։

Յատուկ դժուարութիւն պատճառած է ի վաղուց 23րդ Հռովմէականի տասը լիտր ոսկւոյն եւ մասնական օրինաց 500 սկուտին մէջ եղած տարբերութիւնը[1]։ Կոստանդիանոսի դրամական բարեփոխութենէն ի վեր մէկ լիտր ոսկւոյ արժէքին համեմատութիւնը կոխուած ոսկեդրամներու հետ (aurei, solidi) միշտ կայուն կերպով նոյն մնաց, այսինքն 1 : 72[2], եւ այս համեմատականութիւնը նաեւ Յուստինիանոսի ժամանակները որեւիցէ փոփոխութիւն չէ կրած, եթէ նկատի չառնունք նուազ արժէքաւոր արծաթի եւ պղնձի դրամներու ընթացքին փոփոխութիւնը։ Իսկ օրինաց շատ տեղերուն մէջ՝ ոսկին եւ սկուտը՝ իբր հաւասար օրինական արժողութեամբ դրամներ՝ կը գործածուէին թօշակի եւ նմանօրինակ վճարումներու տեղն[3], որով ան-

1 Cuiacius, Novellarum constitutionum imp. Justiniani expositio. Colon. Agripp. apud Joannem Gymnicum s. a. 190—192. Biener, Geschichte der Novellen Justinians 511, 512.

2 Mommsen, Gesch. d. röm. Münzenwesens, 1860. 777. Hultsch, griechische u. röm. Metrologie, 2. Aufl. 1882, 327 ff. Marquardt, Röm. Staatsverwalt. II, 26 ff. L. 13 C. Th. de suscept. 12. 6 (Valentinian. et Valens. a. 361) եւ անկէ քաղուած՝ L. 5 C. J. de suscept. 10. 72.

3 Nov. 24, Nov, 25, Nov. 27 եւն.

պատճառ հաւասար եւ համարժէք դրուելու է 10 լիտր ոսկին = 720 սկուտի։ Ի յառաջագունէ մերժելու է նաեւ այն անհիմն կարծիքը, իբր թէ ոսկւոյ արժէքին իբր 30% նուազեցման մը հետեւութեամբ 10 լիտր ոսկին = 500 սկուտի եղած ըլլայ։ Ասիկայ կ'երեւայ թէ Ցուլիանու կարծիքն եղած ըլլայ, որովհետեւ իւր հրովարտակաց համառօտութեան մէջ 23րդ հրովարտակի գտնէ մէկ տեղը „decem librarum auri“ խօսքը՝ „quingentorum aureorum“ով (500 սկուտ) փոխանակած է[1]։ Այս ուրեմն հակասութիւնը լուծելու համար եղած այս հնարքն ընդունելի չէ։

Դարձեալ ոմանք այսպէս պատճառաբանած են. 23րդ հրովարտակն իբր յետսագոյն օրէնք՝ յառաջագոյն տրուած 24—28րդ հրովարտակներէն այնպէս վեր է, որ այդ խնդրական տեղերն ալ փոխանակ 500 սկուտի՝ 10 լիտր ոսկի դրուելու է։ Սակայն այս լուծման դէմ սա դժուարութիւնը կայ, որ ինչպէս տեսանք, 500 սկուտը աւելի ուշ ժամանակ տրուած օրէնքներուն մէջ ալ կայ. իսկ այս բանը օրէնսդրին մէկ սխալին կամ անմտադրութեանը վերագրելու բնաւ պատճառ չկայ։ Ասկէ զատ կը մնայ յիշատակել, թէ 23րդ հրովարտակը իբր յետսագոյն ընդհանուր օրէնք (lex posterior generalis)՝ հին մասնական օրէնքներն ամենեւին չի խափաներ։

---

1 Julian. c. 91. Cuiacius անդ կ'առաջարկէ փոխանակ D aureorum՝ DCCXX կարդալ։

Տարբերութեան լուծումը պէտք է փորձել ուրիշ ճամբով. եւ ըսուածը կրկնելու վտանգով իսկ՝ պէտք ենք անգամ մ'ալ դառնալ կուսակալաց իբրեւ գերամեծար դատաւոր բողոքընկատողութեան առնելու ձեռնհասութեան։ Լաւ միտ դնելով 23րդ հրովարտակին եւ նոյնին մէն մի գաւառի համար տրուած օրէնքներու հետ յարաբերութեան, կը տեսնենք սա մտադրութեան արժանի իրողութիւնը, թէ բողոքի առենական երկու իշխանութիւն զանազանելու է։

1. Կուսակալի վերին առենական իրաւասութիւնն՝ իւր յատուկ գաւառին համար եւ իւր գաւառէն եղած բողոքները։ Այս վերին առենական իրաւասութիւնն ունի կուսակալը հանդէպ ստորակարգեալ դատաւորներու, քաղաքային պաշտօնատարներու, քաղաքաց պաշտպաններու (Defensor) եւն[1], ինչպէս նաեւ փոխանորդ դատաւորներու, բաւական որ ատոնք գերամեծարներու կարգէն չըլլան։ Եթէ վէճի առարկան 500 ոսկուէն աւելի չէ, այն ատեն — ինչպէս որ 24—30րդ հրովարտակները (31րդ եւ 103րդ հրովարտակներն առ այժմ նկատի չենք առնուր) միաբան հաստատած են —, այս դէպքերու մէջ

[1] Ըստ Nov. 15 c. 3 § 2 եւ c. 5՝ քաղաքաց պաշտպանները ձեռնհասութիւն ունէին մինչեւ 300 ոսկւոյ հասնող գումարներու. եւ ատոնց դէմ եղած բողոքը կ'ուղղուէր կուսակալներու։ Ստորադաս կամ օգնական դատաւորներու (judices pedanei) նկատմամբ հմմտ. Nov. 82 c. 4.

կուսակալի որոշումը վերջին ատեան կը կազմէ եւ վերջնական է։ Եւ իրաւատական այս որոշումը 23րդ հրովարտակով ալ փոփոխութիւն կրած չէ, մասնաւորապէս կուսակալին դատաւորներէն եկած այս բողոքներուն համար 10 լիրա ոսկւոյ որոշեալ գումարը 500 սկուտի տեղ դրուած չէ։ Եթէ այս հրովարտակին 3րդ գլխոյն մէջ Ասիական ու Պոնտական թեմերուն կոմէսները, փոխհիւպատները եւ այլ գերամեծար դատաւորները Աւգոստական վերակացուին եւ Արեւելից կոմէսին հաւասար նկատուած են աստիճանաւ — որոնց երկուքն ալ թէեւ շատ մը դատաւորներու վրայ հսկողութիւն կ'ընէին, բայց յատուկ դատաւոր մը չէին կառավարեր —, ասկէ կրնայ եզրակացուիլ, թէ հոս դրուած կանոնը, մանաւանդ 10 լիրա ոսկւոյ իրաւատական չափը չ'արժեր այն բողոքներու համար, որոնք բուն անոնցմէ կառավարուած դատաւորներէն կու գան։ Ասոնց համար արդէն նախորդ դատաւորական կարգադրութեանց մէջ օրինական կանոններ դրուած էին։ Այս կանոնները, ինչպէս արդէն ըսինք, 23րդ հրովարտակին հետ ի միասին ի զօրութեան մնացած են եւ իբրեւ մասնական օրէնք ի վեր են քան նոյն հրովարտակը։ Միայն այսպէսով կը բացատրուի, թէ 23րդ հրովարտակէն ետքն ալ դեռ իւրաքանչիւր դատաւորի համար նմանօրինակ օրէնքներ կրնային հանուիլ։

2. Գերամեծարութեան աստիճան ունեցող կուսակալներու վերին դատական իրաւա-

տութիւնը իրենց սեպհական գաւառէն դուրս եւ ինչ ինչ դրացի գաւառներու վրայ։ Թիւ 1ին մէջ յիշուածէն բոլորովին տարբեր այս բողոք ընդունելու իշխանութիւնն է, որ 23րդ հրովարտակին մէջ օրինապէս կարգադրուած է։ Այս բողոք ընդունելու իշխանութեան նկատմամբ նախաւոր կարգադրութիւններ տակէ յառաջ ալ կրնան ցոյց տրուիլ եւ հաւանաբար ինչ ինչ փոխանորդներու բարձման հետ առնչութիւն ունին. այսպէս զ. օր. Պիսիդիոյ եւ Լիկաւոնիոյ նախկին վերակացուներուն դէմ՝ յառաջ քան անոնց Պրետորութեան բարձրացումը՝ եղած բողոքները կ'ըլլային Ասիական փոխանորդը փոխանակող Պակատեան Փիւռիգիոյ կոմէսին[1], եւ նմանօրինակ իշխանութիւն տրուած ըլլալու է Ա. Գաղատիոյ կոմէսին ալ Պոնտոսի զանազան գաւառներու համար։ Արդ 23րդ հրովարտակն այս կարգաւորութիւններն Արեւելքի համար ընդհանրացուցած եւ մասնական որոշումները ճշդած է։ Ըստ այսմ այս մասնաւոր իրաւասութիւնն ունին՝

ա) ոչ թէ ամէն կուսակալ, այլ միայն Ասիական եւ Պոնտական թեմերու բացորոշ կերպով առ այս իրաւասութիւն ընդունած կուսակալները եւ մէկ քանի Արեւելից թեմին վերաբերողները[2].

---

1 Nov. 24 c. 4. 5. Nov. 26 c. 6.

2 Տարակոյս չկայ, որ Պակատ. Փռիւգիոյ եւ Ա. Գաղատիոյ կոմէսներն ալ այս իշխանութիւնն ունեցած են։

Բ) ոչ երբեք գերամեծարութեան նոյն աստիճանն ունեցող կուսակալաց հանդէպ, այլ միշտ ստորին աստիճան ունեցող (clarissimi, Praesides եւն) դրացի կուսակալներու հանդէպ։ Վերջիններուս ըլլայ առաջին կամ ըլլայ նաեւ երկրորդ աստիճանի (Instanz) մէջ տրուած վճիռներուն դէմ բողոքն այլ եւս պիտի չուղղուի փոխանորդին կամ Պրետորաց վերակացուին, այլ դրացի գաւառի մը մասնաւորապէս առ այն կարգուած գերամեծար դատաւորի մը (iudex spectabilis), որ արքունի դատարանի ձեւակերպութեանց համեմատ դատելու եւ վճռելու իրաւունքն ունի[1]։

Գ) Այսպիսի դէպքերու՝ եւ այն մի միայն ասոնց մէջ — եւ ոչ թէ տին տակ գացող դէպքերու մէջ — գերամեծարին վճիռը վերջնական եւ վճռական է այն ամէն խնդիրներու մէջ որ մինչեւ 10 լիտր ոսկւոյ կը հասնին։

Թէ 23րդ Հրովարտակի ճշմարիտ իմաստն այս է, կը հետեւի անուղղակի, ինչպէս էջ 74 եւ 78 ցոյց տրուեցաւ, 30րդ գլխոյն բացատրութենէն, եւ ուղղակի կը հաստատուի 4րդ գլխով՝ զոր անոր յաւելուածն ու

---

Արեւելից թեմին մէջ այս բացառիկ դիրքը տրուած է Պաղեստինի փոխհիւպատին. Nov. 103.

1 Nov. 23 c. 3 — sacro auditorio adhibito — vice sacri cognitoris. Այս բանաձեւերու մասին հմմտ. Bethmann-Hollweg, անդ III, 335.

մեկնութիւնը համարելու ենք։ Հոս, աստիճանաբար ստորնագոյն ատեանէ առ բարձրագոյն ատեան ընթացքը պահելու համար, բողոքներու գերամեծար դատաւորէ մը ուրիշի մը առաքումը կ'արգելուի, եւ միեւնոյն պատճառաւ[1] կայսերական փոխանորդ դատաւորներու (եթէ գերամեծարի աստիճանն ունին) վճռոյն դէմ բողոքներ ընդունելու իշխանութիւնը կը բարձուի դատաստական կուսակալներէ. եւ ապա այսպէս յառաջ կը տարուի. "Իսկ դատաւորաց նախագահներէն եւ մեզմէ զրկուած դատաւորներէն, եթէ գերամեծար դատաւոր չեն, յիշեալ քանակութեան սահմանին մէջ կը կարգադրուի։„

Ուրիշ խօսքերով. միայն ստորին աստիճան ունեցող կուսակալներու եւ դատաւորներու վճիռներուն դէմ եղած բողոքները կրնան դրացի գաւառին մէկ գերամեծարին ուղղուիլ, եւ միայն ա՛յս բողոքներու ատեն 10 լիտր ոսկւոյ որոշիչ չափը նշանակութիւն կը ստանայ։ Իսկ թէ Ճ կէտին մէջ յիշուած այս դէպքերուն համար 500 սկուտի գումարը պահպանուած չէ, պարզապէս անով կը մեկնուի, որ խնդիրը հոս մասնաւոր եւ բարձրագոյն իրաւասութեան վրայ էր, եւ ըստ այսմ վերին դատաւորին իշխանութեան սահմանն ալ կրնար բարձրացուիլ։

---

1 "Չըլլայ թէ կարծուի թէ դատը ոչ աստիճանաբար, այլ սխալ տեսնուած է։„

Թէեւ որոշ, ճշգրիտ տեղեկութիւն ալ չունենանք, թէ մէն մի գաւառ ո՛ր դրացի գերամեծարին կ'իյնար[1], այսու հանդերձ այս նկատմամբ մեր աղբիւրները գոնէ երկու օրինակ մեր առջեւը կը դնեն։ Այս օրինակներէն մին մեր առջեւը կը դնէ 31րդ հրովարտակը՝ Հայաստանի համար։ Ինչպէս գիտենք, նոր կազմակերպուած չորս գաւառներէն երկուքը՝ Բ. եւ Դ. Հայք՝ նախագահներու, ուստի թեմակալներու ներքեւ դրուեցան, իսկ միւս երկուքը գերամեծարներու ներքեւ, այսինքն Ա. Հայք՝ փոխհիւպատի մը եւ Գ. Հայք՝ կոմէսի մը ներքեւ[2]։ Այս աստիճանաց յարաբերութեան եւ 23րդ հրովարտակին համապատասխան էր, որ Բ. Հայոց բողոքները՝ Ա. Հայոց փոխհիւպատին, եւ Դ. Հայոց բողոքները՝ Բ. Հայոց կոմէսին իբր մերձաւոր գերամեծար դատաւորաց ներկայացուէին։ Ընդհակառակն Ա. եւ Գ. Հայոցմէ եկող բողոքներու համար մասնաւոր որոշողութեան մը

---

1 Պոնտական թեմին մէջ միայն երկու գաւառ — Bythinia եւ Galatia salutaris — կար, որոնց գլուխը Գերամեծար չէր։ Շատ աւելի էին այսպիսի գաւառները ասիական թեմին մէջ. օր. Պամփիւլիա, Փռիւգիա, Կարիա, Լիւդիա եւն. Սակայն պէտք ենք նկատել, որ Ասիոյ կուսակալը փոխհիւպատ էր եւ Գերամեծար. ասոր ձեռքին տակն էին բաց ի իր գաւառէն՝ նաեւ Հելլեսպոնտոս եւ կղզեաց գաւառները։ Notit. dign. Or. XX. Nov. 8. Notit. § 2.

2 Nov. 31 c. 153 — «Այնպէս որ չորս Հայքերէն երկուքը Գերամեծարի տակ են՝ մին փոխհիւպատի եւ միւսը կոմէսի, իսկ երրորդն ու չորրորդը՝ գահերէցներու։»

պէտք չկար, որովհետեւ անոնց կուսակալներուն ալ այն ունեցած իշխանութիւնը մնաց: 31րդ հրովարտակի մէջ 500 սկուտի յիշատակութիւնը յամենայն դէպս տարակոյս յառաջ կը բերէ, ինչու որ ըստ սկզբանց, տասը լիտր ոսկւոյ գումարը կը սպասուէր: Եթէ սակայն խնդրական տեղին աւելի մանր քննուի[1], պիտի տեսնուի, թէ հոն երկու գերամեծարներուն ատենական իրաւասութեանը սահման մը որոշուած չէ, այլ լոկ պատճառաբանելու համար, թէ ինչու միւս երկու Հայաստանները մէկալ Հայաստաններուն ենթարկուեցան, կը կցուի այն ի հարկէ ոչ շատ ուղղամիտ դիտողութիւնը, թէ կայսեր ջանքն եղած է մինչեւ 500 սկուտ արժողութիւն ունեցող խնդիրներու մէջ բողոքները մայրաքաղաքի դատարաններէն հանել եւ զանոնք գաւառի գերամեծարներուն վերապահել: Սակայն փոխհիւպատոսին՝ ինչպէս նաեւ կոմէսին կողմանէ 23րդ հրովարտակին գործադրութեան բնաւ չէր հակառակեր այս դիտողութիւնը. ուստի Բ. եւ Դ. Հայոցմէ եկող բողոքներու պարագային պէտք էր որ 10 լիտր ոսկւոյ գումարը իրենց համար որոշիչ նշանակութիւն ունենար:

Պաղեստինեան երեք՝ Առաջին, Երկրորդ եւ Երրորդ Պաղեստին

---

1 Nov. 31 անդ. “Մեր դիտումն է, որ մինչեւ 500 սկուտ հասնող իրաց դէմ եղած բողոքները մեր մայրաքաղաքը առաքուելու չեն, այլ մերձաւոր այն դատաւորին, որ գերամեծարութեան աստիճան ունի:„

գաւառներու կուսակալներէն[1], միայն Առաջինը Յուստինիանոս ձեռօք 103րդ հրովարտակով փոխ հիւպատոս եւ գերամեծար եղաւ, մինչդեռ միւս երկուքը միայն իբր պարզ նախագահ մնացին: Արդ՝ կայսրն 23րդ հրովարտակի ոգ-ւոյն համաձայն միեւնոյն ատեն անոր յանձնեց վերին դատական իրաւասութիւնը միւս երկու գաւառներուն վրայ եւ անոր սեփականեց բո-ղոքները — ἐξ ἑκατέρας Παλαιστίνης (երկու Պաղեստիններէ) — եւ այն՝ անվրիժելի կերպով վճռելու իրաւասութիւն տալով անոր մինչեւ տասը լիտր ոսկւոյ խնդիրներու մէջ, քանի որ հոս խնդիրն էր օտար գաւառներէ եկող բողոք-ներու վրայ[2]: Միւս կողմանէ կայսրը, 548ին 8րդ արքունի հրովարտակաւ Պոնտոսի երկրին փոխանորդին դիրքը նորոգած միջոցին, 500 ոսկւոյ գումարը սահման դրաւ ասոր համար, վասն զի խնդիրը լոկ իրեն իրաւասութեան սահ-մանին մէջ եղող եւ ոչ թէ օտար երկիրներէ եկած բողոքներու վրայ էր[3]:

1 Notit. dign. Or. II գիտէր արդէն երեք գաւառ-պետերն Palaestina, Palaestina secunda եւ Palaestina salutaris. առաջինը՝ որուն գլխաւոր քաղաքն էր Կեսարիա, հիւպատոսի մը տակն էր: Նոյնպէս Hierocles 43. 44. Հմմտ. Kuhn, անդ. II, 318 ff.

2 Nov. 103 c. 1. "Լսել մէն մի Պաղեստինէ իրեն բերուած բողոքները՝ մինչեւ 10 լիտր ոսկի".

3 Edict. 8 c. 1. § 1. "Ցառաջ ունեցածն ալ՝ այսինքն կայսերական դատաստանարան՝ եւ տուինք անոր՝ 500 ոսկիէ աւելի չեղած խնդիրները քննելու — հոն բուն իրաւանց դատելով". — Արաբիոյ չափաւորիչին համար Nov. 102ի մէջ բացայայտ որոշում չկայ:

Հռովմէական ստորապութեանց յարաբերութեանց վրայ խօսք եղած միջոցին՝ էջ 58 յիշուեցաւ 529 տարին հրատարակուած օրէնքը՝ L. 5 C. J. de temp. et repar. app. 7, 63՝ որուն մէջ Յուստինիանոս կայսերական արքունիք բողոք ներկայացընելու ժամանակամիջոցները սահմանած ատեն կը յիշէ նաեւ Հայաստանէն եւ ազգերէն գալիք բողոքները[1]։ Թէ հոս խնդիրը ստորապներու կողմանէ տրուած վճիռներուն դէմ բողոքի մասին ըլլայ, անկարելի կը համարիմ. այս տեղը պէտք է կապակցութեան մէջ դնել Հայաստանի զինուորական յարաբերութեանց վրայօք Յուստինիանոսի բարենորոգական կարգադրութեանց հետ, որոնց վրայ վերը խօսուեցաւ։ Ըստ այսմ ստորապութեանց համար, անոնց ուրոյն գաւառի մը միացուելէն ու վերածուելէն յառաջ, երկու կոմէս անուանուեցան Հայաստանի զօրաց Մագիստրոսին ներքեւ, եւ ասոնք իրենց զինուորական իրաւասութեան հետ, զոր ունէին նաեւ միւս կոմէսները, տեսակ մը քաղաքական իրաւասութիւն ալ ի գործ դրած են։ Սակայն կոմէսներու դէմ տրուած բողոքներուն, յուստինեան L. 38 C. J. de app. 7. 62 կարգադրութեան մը համաձայն, վճիռ կու տար՝ կայսերական արքունի դատարանի վրայէն ձեւացուած, պաշտօնէից վերակացուէն եւ պալատան գանձապահէն բաղկացած

---

1 Թուականն է՝ Dat. XV. Kal. Dec. Chalcedone Decio v. c. cons.

յանձնաժողով մը[1]։ Սատրապութեանց մէջ կոմէսներու դէմ բարձրացած այս կարգի բողոքները կապ ունին L. 6 cit. հետ։

Հայկական յարաբերութիւններուն կարգադրութեան կցեց Յուստինիանոս նոյն երկիրներուն մէջ նիւթական իրաւունքի բարենորոգում մը՝ բառնալով ամուսնական ու ժառանգական իրաւանց մէջ ի հնուց զօրող մասնական իրաւական սովորութիւններն եւ հաստատելով հռովմէական իրաւունքը՝ եթէ տակաւին հոն ի զօրութեան չէր։ Ժառանգական իրաւանց մէջ՝ հակառակ ելաւ կայսրը կանանց օրինական ժառանգական յաջորդութեան իրաւունքէն զրկման, ամուսնական իրաւանց մէջ՝ կանանց սովորական դարձած վաճառումին՝ որ ինչպէս շատ մը կէս քաղաքակիրթ ժողովուրդներու, նոյնպէս Հայոց քով ալ ի գործածութեան էր։ Արդէն 535ին հանուած էր օրէնք մը՝ յուստինեան ծանօթ 13 հրովարտակներուն երրորդը[2], որով աղջկանց եւ մանչերու հաւասարապէս ծնողաց ժառանգն ըլլալու իրաւունքը կը կարգադրուէր. յաջորդ տարին կայսրը՝ 31րդ հրովարտակն եւ միաժամանակ նոյն հրովարտակն բացայայտ կերպով մատնանիշ ընելով հանեց երկրորդ կարգադրութիւն մը, 21րդ հրովարտակը[3], որ կը հրամայէր ընդհանրապէս ամէն օրինաւոր ժառան-

---

1 P. Krüger L. 38ը կը դնէ 529ին։ Թուականը կը պակսի։

2 Dat. X. Kal. Aug. Belisario v. c. cons.

3 Dat. XV. Kal. Apr. post cons. Belisarii v. c.

դատական դէպքերու համար հռովմէական իրաւանց տրամադրութեան համաձայն իգական եւ արական ազգականաց մէջ հաւասարութիւն եւ ամէն տեղ ու միշտ հռովմէական օրէնքներուն գործածութիւնը, եւ այնու նաեւ ընելայն կանանց գերեվաճառութեան պարսաւելի զեղծումը կը խափանէր[1]։ Երկու օրէնքներն ամէն տեղ իրարու հետ չէին համաձայնիր, մանաւանդ իրենց գործադրութեան դրուելու ժամանակին նկատամամբ[2]. եւ ասոնք պատճառ ալ տուին շարք մը անդրադարձ խնդիրներու, որոնց մասին տակաւին հոս խօսիլն զանց կ'առնունք։ Միայն կէտ մը շօշափենք, այսինքն արդեօք այս երկու օրէնքներն ամէն հայ երկիրներու, թէ միայն որոշ մասերու համար հանուած են։ Թէ 3րդ հրամանագրի եւ թէ 31րդ հրովարտակի ընդհանուր կերպով բանուած վերնագրութիւններէն կրնայ հետեւցուիլ, թէ երկուքն ալ ամբողջ չորս հայական գաւառներու համար գրուած են։ Ասոր հակառակ կ'ելլէ սակայն այն, որ

1 Nov. 21 c. 1. — "Նոյնպէս մեր (ժառանգական) օրէնքն պահուելու է Հայոցմէ եւ այս կէտին մէջ Հայոց օրէնքները Հռովմէականներէն խտրելու չեն — վասն զի ամէնքը Հռովմ. օրինաց հպատակ են", 3դ հրամանագիրը բացայայտ կերպով Հռովմէական օրինաց պարտաւորութեանը վրայ կը խօսի. "Վասն զի այս պատճառաւ արդէն մեր օրէնքները հոն խրկեցինք".

2 3դ Հրամանագիր Գլ. 1, § 1ը կանխիչ արժողութիւն պիտի ունենար մինչեւ Յուստինիանու թագաւորութեան սկիզբը։ Իսկ Nov. 21 c. 2 կանխիչ արժողութիւն պիտի ունենար ժամանակին ինդիկտիոնին 14դ տարւոյն սկիզբէն, որ է ըսել 1 Սեպտ. 535/536։

առանցմէ երկուքը (Բ. եւ Գ. Հայք) արդէն դարերէ ի վեր իբրեւ գաւառ՝ հռովմէական պետութեան վերաբերած էին, եւ դժուարաւ կրնայ ենթադրուիլ, թէ նոյն գաւառներն այնչափ երկար ատեն հռովմէական պետութեան իրաւունքէն եւ նոյնին գործածութենէն զերծ եղած ըլլան. մինչդեռ տարակոյս չկայ, որ Առաջին Հայք (յառաջուան Մեծ Հայաստան) եւ Դ. Հայք (նախկին սատրապութիւնք) մինչեւ Յուստինիանոս կառավարութեան ատեն իրենց սեպհական իրաւանց ու իրենց սովորութեանց համաձայն կառավարուած էին, եւ հռովմէական իրաւունքն իրենց մէջ արժած պիտի չըլլայ։ Հոս աւելցնելու է հետեւեալն ալ։ 21րդ հրովարտակը ուղղուած էր Ա. Հայոց տակաւին նորոգ կարգուած Ակակիոս փոխհիւպատին, որուն, ինչպէս գիտենք, միանգամայն յանձնուած էր իշխանութիւնն այն սատրապութեանց վրայ, որոնցմէ Դ. Հայք ձեւացած էր[1]։ Թէպէտ եւ 3րդ արքունի հրովարտակին մէջ կը պակսի անունն՝ առ որ ուղղեալ է, սակայն բնագրին մէջ գործածուած տիտղոսէն[2] կասկածի տեղի չի մնար, թէ միեւնոյն Ակակիոսն եղած ըլլայ այն, որուն ուղղուած էր այս օրէնքն ալ։ Այսպէս ի նպաստ ասոր կը խօսին պարագաներու շարք մը՝ մինչեւ աստիճան մը հաւանականու-

---

1 Այս կերպարանափոխութիւնը մասնանիշ կ'ընէ 21դ հրովարտակին յառաջաբանը։

2 Nov. 21 — "Ձեր գերամեծարութիւնը։" Edict. 3 c. 1 — "Ձեր Գերամեծարութեանը։"

*թեամբ թէ Յուստինիանոսի ձեռօք բարձուած ազգային առանձնայատուկ սովորութիւնք ի գործութեան էին միայն Նախկին Մեծ Հայաստանի եւ սատրապութեանց սահմաններուն մէջ, եւ թէ այս պատճառաւ նոյն կրկին օրէնքներն աղդրուած են Հայաստանի այս մասերուն համար մի՛այն։*

